ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԿԵ.

# ՏԵՂԱԳՐԱԿԱՆ ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆՆԵՐ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷԿ ՔԱՆԻ ՔԱՂԱՔՆԵՐՈՒ ԵՒ ԲԵՐԴԵՐՈՒ ՄԱՍԻՆ

ԳՐԵՑ

Հ. ՊԵՏՐՈՍ ՏԷՐ-ՊՕՂՈՍԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ





ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1951

# TOPOGRAPHISCHE FORSCHUNGEN

## ÜBER EINIGE STÄDTE UND BURGEN ARMENIENS

VON

P. PETRUS TER-POGHOSSIAN

MECHITHARIST



WIEN

MECHITARISTEN-BUCHDRUCKEREI

1951

# ՏԵՂԱԳՐԱԿԱՆ
# ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆՆԵՐ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷԿ ՔԱՆԻ ՔԱՂԱՔՆԵՐՈՒ
## ԵՒ ԲԵՐԴԵՐՈՒ ՄԱՍԻՆ


ԳՐԵՑ

**Հ. ՊԵՏՐՈՍ ՏԷՐ-ՊՕՂՈՍԵԱՆ**

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ







**ՎԻԵՆՆԱ**

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1951

## ՅԱՌԱՋԱԲԱՆ

Հայաստանի աշխարհագրական անուններու վրայ հարեւանցի ակնարկ մը բաւական է մեզ համոզելու, թէ այդ երկիրը դարերու ընթացքին, որպիսի յեղաշրջումներու ենթակայ եղած է: Այսօրուան աշխարհագրական քարտէսներու վրայ սակաւաթիւ են այն անունները, որոնք մեզի յիշեցնէին հայ անցեալը: Հայ քաղաքները, աւանները ու գիւղերը եւ նոյն իսկ նահանգները զգեցած են արաբական, թաթարական եւ թրքական այլազան եւ խորթ տարազ մը: Եւ բազմաթիւ քաղաքներ, որոնք երբեմն հին Հայաստանի կուրծքին փայլուն զարդը կը կազմէին, վաչկատուն ցեղերու աւերիչ արշաւանքներու հետեւանքով հիմն ի վեր տապալած եւ այրեւացաւեր եղած են եւ ոմանց աւերակներու հետքն իսկ չէ մնացած: Ուստի զարմանալի չի թուիր մեզի երբ սրտի ցաւով կը գոչէ Թէոդոր Կլուգէ[1], թէ «Սիւնեաց նահանգին 700 անուններէն միայն 4 հատ կարող

[1] Kluge Theodor, Das Itinerar von Artaxata nach Armastica auf der römischen Weltkarte. Archiv Orientálni, Prag, Bd. XII (1941), Nr. 3—4, էջ 156:

եղած եմ այսօրուան աշխարհագրական քարտէսներու վրայ իրենց հին անունով նշանակուած գտնել» :

Հակառակ այսքան աննպաստ պայմաններու, կարելի եղած է հայ հին տեղանուններու գրեթէ մեծ մասին դիրքն ու տեղն որոշել, շնորհիւ վերջին շրջանիս կատարուած աշխարհագրական հետազօտութիւններու եւ ուսումնասիրութիւններու : Բնականաբար տակաւին կը մնան բազմաթիւ տեղւոյ անուններ, որոնք պէտք ունին ճշգրտուելու եւ տեղադրուելու :

Անոնցմէ մի քանին այստեղ մեր քննութեան նիւթ առնելով պիտի փորձենք նոր տուեալներով ճշգրտել անոնց դիրքն ու տեղը, որչափ որ հնարաւոր է :

Գրութիւնս նախ լոյս տեսաւ «Հանդէս Ամսօրեայ»ի 1944—1950 տարիներուն մէջ (տե՛ս աստ Բովանդակութիւն) :

ՀԵՂԻՆԱԿԸ

ՔԵԶ

ՍԻՐԵԼԻ ՄԱՅՐ

ԸՆԾԱՅ

ԵՐԱԽՏԱԳԷՏ ՍՐՏԷ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# 1. ΟΛΑΝΗ

## ՈՒՂԵԱՑ ԲԵՐԴ. ΒΑΒΥΡΣΑ, ՓԱՌԱԽՈՏ, ԱՐԳԵԱՆՔ, ԻԳԴԻՐ, ԱՐՄԱՒԻՐ ԲԵՐԴ, ԿԱՐԱԿԱԼԱՅ, BARIZACHA, ԲԱՐՁՐԱԲՈՒՂ

*Ստրաբոն*[2] *Արտաշատի վրայ խօսած ժամանակ կը յիշէ «Ոչ կարի հեռի ի քաղաքէն (յԱրտաշատայ) են ամուր տեղիքն Ողանէ եւ Բաբիւրսա, տունք գանձուց Տիգրանայ եւ Արտաւազդայ»* (ԺԱ. 14, 6)։ *Ո՞ւր կը գտնուին այս ամրոցները։ Այս հարցման պատասխան տուած են բազմաթիւ հեղինակներ, որոնց ենթադրութիւններն ու կարծիքներն ճական կէտերով ներկայացնել կը փութանք, ցուցնելու համար միանգամայն թէ խնդրական անուն մը որոշ կերպարանք մը կը ստանայ բազմապիսի յեղաշրջումներ կրելէ յետոյ։*

*Ջէյմս Մորիէր*[3] *իր երկրորդ ուղեգրութեան մէջ (Թարգմանութիւն Յ. Յակոբեանի, էջ* 308—309) *«Ողանէ» կը նոյնացնէ Ալանջիկի (Սիւնեաց նահանգին պատմական Երնջակ ամուր բերդին) հետ։ «Այս լեռան (Իլան դաղի) հիւսիսակողմը գտնւում է*

---

[2] Strabonis Geographica, ed. A. Meineke, I—III, Lipsiae 1921—1925, *գիրք ԺԱ*, 14, 6։

[3] Morier James, A second Journey trough Persia, Armenia and Asia Minor to Constantinople, London 1818. *Թարգմ. Յովհ. Յակոբեանէ՝* Ուղեգրութիւններ, *հատոր Զ, ԺԹ. դարի առաջին քառամեակ, Երեւան* 1934, *էջ* 297—394։

Ալանջիկ, բնական զօրաւոր մի դիրքի վրայ զետեղուած մի բերդ, ուր յաճախ բնիկներն ապաստան են գտել անիշխանութեան ժամանակ: Դա յիշատակուած է Թիմուրի պատմութեան մէջ: ...Հաւանօրէն սա հին Ոլանայի վայրումն է Արտաշատի մօտ, որ ըստ Ստրաբոնի, Բաբիրսայի հետ միասին Տիգրանի եւ Արտաւազդի գանձի քաղաքն էր»: Իսկ վերջինը կը համարի «Գառնիից բաւական հեռու գրեթէ անմատչելի լեռան մի մասին վրայ գտնւում է մի հին քառակուսի բերդ աշտարակներով, կոչուած Կըզկալէսի, եւ նորա մօտ մի հայ եկեղեցի: Հարիւրապետ Մոնտիեթն ինձ տեղեկացրեց թէ ինքն այցելել է Բիւրս կոչուած մի աւերակ, զետեղուած այս լեռնաշղթայի մի բնական զօրաւոր դիրքի վրայ, եւ թէ շատ մեծ հնութեան նշաններ ունի, հաւանօրէն Բաբիրսայի աւերակները լինեն (Անդ, էջ 348):

Ալիշան[4] վարանումով մը կը հարցնէ. Արդեօք անգղիացի ուղեւորներու այս Բիրս կամ Բուրսա[5] աւերակը եւ անուան մերձաւորութենէն դատելով Բաբիրսայի հետ պէտք է նոյնացնել, թէ Ազատ գետի հարաւ-արեւելեան առաջին բազուկին մօտ գտնուած եւ ռուսական քարտէսներու վրայ նշանակուած

---

[4] Ալիշան Հ. Ղ., *Այրարատ*, Վենետիկ 1890, էջ 352:

[5] Ker Porter Robert, Travels in Georgia, Persia, Armenia, Ancient Babelonia. London 1822· *Թրգմ. Յ. Յակոբեան*՝ Ուղեգրութիւններ, *Զ. հատոր, Երեւան* 1934, էջ 810:

Բայբուրդը, որ «մերձագոյն եւս է անուամբ Սարաբոնեան բերդին. եւ հաւանելի է մեզ յերկոցուն սոցա լինել գանձարան Տիգրանայ եւ Արտաւազդայ. այլ փափաքելի է կարեւոր քննութիւն վայրացն, որպէս եւ տեղւոյ միւս ամուր բերդի Ոլան»: Անդ ծանօթութեան մէջ կ'աւելցնէ, «Այլ թերեւս իցէ սա Ոլենի գիւղն Ճահկոյ Սինեաց գաւառին, յիշեալ ի Ստեփ. Օրբելեան»:

Էփրիկեան[6] բոլորովին զարմանալի մեկնութիւն մը ունի Բաբիրսայի մասին: «Բաբիրսա — Այս անուամբ ամրոց մը կը յիշէ Սարաբոն Այրարատայ Մազազ—Ոստան գաւառին մէջ, Արտաշատայ հիւսիսային կողմը: Ամրոցիս մէջ կը պահուէին Տիգրան Բ.ի գանձերը»: Սարաբոնի տեղիքին անծանօթ մը անշուշտ պիտի կարծէ Բնաշխարհիկի այս չնաշխարհիկ տեղեկութիւնը կարդալով, թէ մեծ աշխարհագիրը տուած է այդ սահմանը Բաբիրսայ բերդին, մինչդեռ Սարաբոն չունի բնաւ այդպիսի եւ նման վկայութիւն մը, նա ոչ Մազազ կը ճանչնայ եւ ոչ ալ Ոստան, եւ բերդերու անունները յիշած ժամանակ Արտաշատի ոչ հիւսիսը գիտէ եւ ոչ ալ հարաւ կամ արեւմուտը կը դիտէ:

Իսկ Գարագաշեան[7] բաւականացած է Սարաբոնի բերդերը փոխանակել ծանօթ հայ

---

[6] Էփրիկեան Հ. Ս., Բնաշխարհիկ Բառարան, Վենետիկ 1903, էջ 354:
[7] Գարագաշեան Ա. Մ., Քննական Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, Մաս. Բ, էջ 136:

ամրոցներու անունով Ողական եւ Բողբերդ կոչելով. «Եւ Տիգրան... ունէր քաղաքս մեծամեծս լի գանձուք, որպիսի էին Ողական եւ Բողբերդ ոչ հեռի յԱրտաշատէ, եւ Արտագերք առ Եփրատաւ»: Մեզի ծանօթ Ողական[8] Արտաշատէ հարիւրաւոր մղոններով հեռու կը գտնուի Տարօնի մէջ, իսկ Բողբերդ[9] Բասենի մէջ, հետեւաբար «ոչ հեռի յԱրտաշատէ» չէր կարող ըսել առանց անդրադոյն մեկնութիւն մը տալու: Գարանֆիլեան[10] աշխատած է Գարագաշեանի անորոշութիւնը բառնալ «ոչ հեռի յԱրտաշատէ» բացատրութիւնը արտաքսելով եւ միեւնոյն ժամանակ ծանօթ տեղագրութեամբ բերդերը բնորոշելով, «Տիգրան մասնաւորաբար հոգ տարած էր նաեւ պատերազմական ճոխ գանձեր ամբարելու Ողական ամրոցը Եփրատի վրայ եւ Բողբերդ Երասխի հովիտը, ինչպէս նաեւ Արտագերք ամրոցը լի եւ լի էին ամբաւ հարստութեամբ»: Այս մեկնութեամբ բնականաբար Ստրաբոնի բերդերուն դիրքը բնաւ չէր որոշուեր:

N. Dolens եւ A. Khatch[11] եւ նաեւ

---

[8] Փաւստոս Բուզանդ, *Պատմութիւն Հայոց*, *Պետերբուրգ* 1883, *էջ* 160. *Եղիշէ*, *Վենետ.* 1859, *էջ* 52. *Խոր. Պատմ.*, *Տփղիս* 1913, *էջ* 228. *Յովհ. Մամիկ. Վենետիկ* 1832, *էջ* 16, 26 *եւն*:

[9] Փարպեցի Ղ., *Պատմութիւն Հայոց*, *Տփղիս* 1904, *էջ* 146, 157:

[10] Էֆհարդ Կուրտ, *Տիգրան Բ. եւ Հայ-Լուկուլլեան Պատերազմները աշխատասիրեց Հ. Գ. Գարանֆիլեան*, *Վիեննա* 1926, *էջ* 48:

[11] Dolens N. et A. Khatch, Histoire des Anciens Arméniens, Genève 1907, *էջ* 170, *ծն.* 3:

Ադոնց[12] Olane եւ Ողականի հնչման նմանութենէն կ'եզրակացնեն միանգամայն նոյնութիւն տեղւոյ, այն տարբերութեամբ, որ Clane = Ողականի հետ նոյն կը համարին նաեւ Տակիտոսի[13] կողմէ յիշուած Volandum validissimum castellum: Մինչդեռ Չամչեան[14] այս վերջինը համապատասխան կը դնէ Հայոց Վանանդ գաւառին. «Յառաջ մղեաց Կորբուղոն զզօրս Հռոմայեցւոց եւ եկեալ ի կողմանս Վանանդայ (զոր Տակիտոս Վոլանդ կոչէ) մարտ եդ սաստկութեամբ ընդ երիս ամրոցս եւ ի միում աւուր էառ զերեսին զնոսա» (310): Այս Չամչեանի նոյնացումը ընդգրկուած կը տեսնենք Գաթըրճեանի[15] եւ Գարագաշեանի[16] կողմէ վերապահութեամբ՝ հարցականով:

Գ. Ասլան[17] «Olane» Aujourd'hui le village d'Ochacan, près de Valarsapat (86): Իսկ Վերնէր Շուր[18] կ'ենթադրէ թէ Volan-

---

[12] Адонц Н., Армения в эпоху Юстиниана, Պետերբուրգ 1908, էջ 16, ծն. 2:

[13] Tacitus C., I Annales, ed. Halm-Andresen, Lipsiae 1926, XIII, 39:

[14] Չամչեան Հ. Մ., Պատմութիւն Հայոց, Վենետիկ 1784, Ա., էջ 130:

[15] Գաթըրճեան Հ. Յովսէփ, Տիեզերական Պատմ., Վիեննա 1882, էջ 113:

[16] Բնն. Պատմ. Բ., էջ 216:

[17] Aslan Kevork, Etudes Historiques sur le Peuple Arménien, Paris 1928, էջ 86.

[18] Schur W., Die Orientpolitik des Kaisers Nero, Leipzig 1923. Հայ. թարգմ. Ներոն Կայսեր Արեւելեան Քաղաքականութիւնը Հ. Մ. Հապոզեանի, Վիեննա 1930, էջ 28:

dum եւ միւս ամրոցները կը գտնուին Երասխի հովիտը, ուր Կորբուլոն «Ցանկարծական խոյանքով մը, Արտաշատի հարաւ Իգդիրի մօտ յառաջաբերդերը գրաւեց, որոնց ամէնէն ամրացածը Տակիտոսի քով Վոլանդոն, իսկ Ստրաբոնի մօտ Ողանէ կը կոչուի»:

Վերջին հետազօտողն այս վայրերու մասին եղած է Յ. Մանանդեան[19], որ իր գեղեցիկ գործին մէջ նկատի ունենալով Տակիտոսի նկարագրութիւնը եւ Պեւտինգերեան քարտէսներու նոր մեկնաբանութիւնը, հետեւեալ կերպով կը պատճառաբանէ, «Ստրաբոնի եւ Տակիտոսի վկայութիւնից պարզ երեւում է, որ Վոլանդ ամրութեան տեղը պէտք է ենթադրել «ոչ շատ հեռու» Արտաշատ քաղաքից եւ այնպիսի մի շրջանում, որտեղ իրար մօտ են գտնուել մի շարք ամրութիւններ»: Ուստի կը մերժէ Գաթըրճեանի (իմա՛ Զամչեանի) եւ Ադոնցի կարծիքները. «նրանք ի նկատի են ունեցել ըստ երեւոյթին հնչիւնական նմանութիւնները (Վանանդ, Ողական եւ Վոլանդ, Ոլանէ), որ միանգամայն կասկածելի են եւ անշուշտ պատահական»: Եւ երկրորդ «անընդունելի են այն պատճառով, որ Կորբուլոնի արշաւանքի ճանապարհը հաւանական է ենթադրել ոչ թէ Վանանդի եւ Տարօնի միջով, այլ Բարձր Հայքից դէպի Ալաշկերտի դաշտ (տես Վ.

---

[19] Մանանդեան Պրոֆ. Յակոբ, Հայաստանի Գլխաւոր ճանապարհները ըստ Պեւտինգերեան Քարտէզի, Երեւան 1936, էջ 40—46:

Շուր, Ներոն կայսեր արեւելեան քաղ. էջ 27 եւ ծան. 22) եւ այնուհետեւ Bagauna—*Zolocerta ուղեգծով։ Արդ ի նկատի ունենալով նրա ճանապարհի այս ուղղութիւնը, կարելի է բնականաբար ենթադրել, որ Կորբուլոն առաջ քան Արտաշատի վրայ յարձակուելը, պէտք է նախապէս նուաճէր Գայլատուի (Balikgöli) արեւելեան կողմերում գտնուող այն ամրութիւնները, որոնք ստրատեգական եւ պաշտպանողական կարեւոր դիրքեր էին Արարատի դաշտի եւ Արտաշատի թիկունքում։ Վ. Շուրի ենթադրութիւնը, որ ‘Վոլանդը եւ միւս յառաջաբերդերը գտնուել են Իգդիրի մօտ, (տես վերը) ըստ իս վիճելի է եւ անհաւանական։ Հռոմայեցիների գրաւած ամրոցների տեղերը որոնք գտնուել են իրար մօտ եւ եղել են բնական ամրութիւններ, կարելի է ենթադրել, ամենայն հաւանականութեամբ, Կարվանսարայի կամ Կուջաղի լեռնային դժուարամատչելի շրջանում, որտեղ այժմ եւս կան բերդերի բազմաթիւ աւերակներ։ Հենց այստեղ, հաւանօրէն, այս ամրացած փակ ու ապահով լեռնաստանում կարող էին լինել եւ Ստրաբոնի յիշատակած Արշակունիների գանձապահ ամրութիւնները»։

«Վոլանդը եւ միւս ամրոցները նուաճելուց յետոյ Կորբուլոնի առջեւ բաց էր ‘արքունի պողոտայն, մինչեւ Արտաշատ» (40—45)։

Որքան ալ Մանանդեանի պատճառաբանութիւններն ըստ բաւականին հիմնաւորեալ են նոր տուեալներով, եւ նախորդ հետազօտողներու արտաքին պարզ նմանահնչուն տեղանուններու վրայ հաստատուած նոյնութեան ենթադրութիւններն իրաւամբ մերժելի կը համարի, սակայն եւ այնպէս մեզ կը թուի թէ ինքն ալ լիովին չէ յաջողած Գործեան հանգոյցը լուծել, տակաւին հարցը կը մնայ կրկին անորոշ:

Ստրաբոնի վկայութիւնը թէ Արտաշատէն «ոչ շատ հեռի» կը գտնուէին գանձապահ ամրոցները, Մանանդեանի մեկնութեամբ ալ չի լուծուիր: Ակներեւ մերձաւորութիւն կ՚ենթադրէ մեծ աշխարհագրին խօսքը: Մինչդեռ Կարմանսարայի կամ Կուջայի անցքն իր ամրութիւններով նոյն ժամանակի պատերազմներուն համար բաւական հեռու կը գտնուի եւ մերձաւոր ամրութիւն մը կամ Արտաշատի դուռը չի կազմեր: Բաց աստի ենթադրենք թէ այդ տեղ կը գտնուէին այդ ամուր բերդերը, սակայն անոնց գրաւումով միանգամայն «արքունի պողոտային» դուռներն անարգել բացուած չէին ըլլար Կորբուղոնի բանակին առջեւ: Որովհետեւ Կարմանսարայէն մինչեւ Արտաշատ կան ու կը մնան տակաւին բազմաթիւ ամրոցներ ու բլուրներ, զոր պէտք էր նուաճել Կորբուղոն, Արտաշատի ճամբան բացուած տեսնելու համար: Թէ իրապէս Երասխի հովտին մէջ Արտաշատէն ոչ շատ հեռու բազմաթիւ բերդեր

կային, կը վկայեն մեզ ոչ միայն այսօրուան բերդերու աւերակները Տաշբուռունի—Կարակոյունլու—Բուլաղբաշի մօտակայքին, այլ նաեւ Հայ մատենագիրներու վկայութիւնները: Մանանդեան քաջ ծանօթ ըլլալով այդ մատենագրական տեղիքներուն, դժբախտաբար անդրադարձութիւնը չէ ունեցած զանոնք այս տեսակէտէ նկատելու: Եղիշէ[20] Վասակի նենգամտութիւնը կը ձաղկէ պատմելով, թէ «Գուժկան հասանէր (առ Վարդան) յաշխարհէն Հայոց վասն ապստամբին Վասակայ, եթէ յետս կացեալ յուխտէն քրիստոնէութեան եւ աւերեալ զբազում տեղիս Հայոց աշխարհին մանաւանդ զձմերոցս արքունի, որ կայեանք զօրացն էին, զԳառնին եւ զԵրամաւնս, զԴրասխանակերտ զմեծ դաստակերտն, զՎարդանաշատն եւ զամուրն Օշական, զՓառախոտն, զԱրդեանսն, զՋողկերտն աւան եւ զբերդն Արմաւրի, զԿուաշն աւան, զԱրուճն եւ զԱշնակն եւ զամենայն ոտն Արագածու»: Ուրեմն Երասխայ հովտին մէջ կը գտնենք այս վկայութեան համեմատ երեք չորս ամրոցներ նախ Փառախոտ, ապա Արդեանք յետոյ Ջողկերտ կամ Յոլակերտ ի վերջոյ բերդն Արմաւրի: Ըստ Պեւտինգերեան[21] քարտէսի Բագաւանէ–Արտաշատ ուղեգծին վերջին կայեանը կը կազմէ Para-

---

[20] Եղիշէի վարդապետ, *Մատենագրութիւնք*, *Վենետ.* 1859, *էջ* 60, *իսկ Մոսկուայի* 1912, *էջ* 72:

[21] Miller Konrad, Itineraria Romana, Römische Reisewege an der Hand Tabula Peutingeriana, Stuttgart 1916.

cata = Փառախոտը ։ Արդ այս ամրոցին վայրը չնորհիւ Բելքի[22] հետախուզութիւններուն հաստատուած է թէ Մասեաց ոտն գաւառին այժմեան Կարասու, հին՝ Գինոյ գետին աղբերակին մօտ Բուլաղ Բաշ կոչուած աւերակ բերդը կը կազմէ ։ Իսկ Զողկերտ–Ցոլակերտը Մանանդեանի մանրակրկիտ ուսումնասիրութեամբ, հիմք ունենալով Պեւտինգերեան քարտէսի ուղեգիծի ցուցումներն եւ Մովսէս Խորենացւոյ[23] Փառախոտի եւ Ցոլակերտի մասին տուած տեղեկութիւնը, կը համապատասխանէ այսօրուան ոչ շատ հեռու Կարվանսարայի աւերակներու վայրից Լինչի[24] քարտէսին Խօշ Խաբարի մօտ աւերակ տեղւոյն, Փառախոտէն 49 մղոն հեռաւորութեան վրայ (Անդ, էջ 27—35) ։

Արդ Փառախոտի եւ Զողկերտի տեղադրութեամբ մասամբ նաեւ կ՚որոշուի Արդեանք աւանին դիրքը, որ այդ երկու ամրոցներուն միջեւ գտնուելու է ըստ Եղիշէի ։ Այս աւանը կը յիշատակուի նաեւ Փաւստոսէն[25], երբ կը պատմէ Հայ Մարդպետին (Դղակ) Գղակի դէպքը · «Այս թագաւորն Պապ յղեաց դեսպանս առ Մարդպետն Գղակ, վաղ եկեսցես, զի պիտոյ է ինձ յղել զքեզ առ թագա–

[22] B e l k W., Beiträge zur alten Geographie und Geschichte Vorderasiens, Leipzig 1901, Heft I—II, էջ 87.

[23] Մովսէս Խորենացի, Պատմութիւն Հայոց, Տփղիս 1913, էջ 40 ։

[24] L y n c h H. F. B., Armenia, London 1901.

[25] Փաւստոս Բուզանդ, Պատմութիւն Հայոց, Պետերբուրգ 1883, էջ 171 ։

ւորն Պարսից Շապուհ...։ Եւ ինքն զուարճացեալ... դեսպան ձիով վաղ հասուցանէր ի գաւառն Այրարատու ի մեծ ի գիւղն ընջին[26] արքունի, որում Արդեանն կոչեն. առ Թագաւորն Հայոց Պապ. եւ զայր յանդիման լինէր Թագաւորին»։ Ուսկից յայտնի կ'ըլլայ թէ Արդեանք ոչ միայն ձմերոց էր, այլ նաեւ մեծ ու նշանաւոր գիւղ էր եւ այն ընջին արքունի, այսինքն տուն արքունի գանձուց էր, ուր կը պահուէր նոյն իսկ Թագաւորին Թագը «Ասացէք ցարքայ, գողէք, ես այս մահու արժանի էի, բայց քեզ արժան էր զիս ի հրապարակի սպանանել եւ ոչ ի տան Թագաց սպանանել, եւ զքո Թագդ արեամբ շաղախել» (Անդ, էջ 172)։ Փառախոտի եւ Ջողկերտի մէջ, ինչպէս ինձ կը Թուի, յարմարագոյն վայրը, ուր կարելի է զետեղել, է Իգդիր աւանը, որուն համար Ալիշան[27] կը գրէ. «Յարեւելեան մասին ձգատեալ խաղից Երասխայ, իբր վեց մղոնաւ յելից Գալֆալու գեղջ կայ բարգաւաճագոյն չէն կողմանցս եւ համօրէն գաւառիս Իկտիր կամ Իղտիր։ Թուի ի հնումն սեփական Այրարատեան գաւառաց վիճակեալ»։ Արդեանք իբր «գիւղ ընջին արքունի» բնականաբար պէտք էր, որ ամրացած

---

[26] Ինճիճեան Հ. Գ., Ստորագրութիւն Հին Հայաստանեայց, Վենետիկ 1822, էջ 500, ընջին համարած է յատուկ անուն մինչդեռ պարզ հասարակ անուն է ուղ. ունջ, որ բազմապիսի նշանակութիւն ունի, այս տեղ գանձ իմաստով գործածուած է համեմատէ Աճառեան Հ., Արմատական Բառարան Ունջ։

[27] Այրարատ, էջ 126։

*ըլլար, եւ հայ ամուր տեղերն առ հասարակ բլուրներու վրայ հաստատուած կ՚ըլլային մինչդեռ այժմեան Իգդիրը դաշտի վրայ է*[28]*. սակայն մենք ունինք բաւական հնագոյն վկայութիւն մը, որմէ յայտնի կ՚ըլլայ թէ Իգդիր օժտուած էր ամուր ամրոցով: Ահա հետաքրքրական այդ տեղեկութիւնը, զոր կու տայ մեզի Ռույ Գոնզալեզ Կլաւիխոյ*[29] *սպանիացի ուղեւորը* 1403—1406 *թուականի իր ուղեգրութեան մէջ:*

*«Յաջորդ ուրբաթ օրը մենք թողինք Սուրմարի եւ ճամբորդելով եկանք մի մեծ ամրոց չինուած մի ժայռի վրայ, ուր մենք պիտի անցնենք գիշերը: Այս ամրոցում բնակում էր մի տիկին, նա այրի է, եւ տէրն է, թէեւ հարկ է վճարում Թիմուրին, այս բերդի եւ շրջակայ հողերի տիրապետութեան համար: Նախապէս այս բերդը եղել է կենդրոնը գողերի եւ աւազակների, որոնք ապրում էին կողոպտելով ճանապարհորդներին, բայց Թիմուրն այստեղից անցնելիս յարձակումով գրաւել էր այն եւ մահուան էր դատապարտել աւազակների գլխաւորին, որ վերոյիշեալ տիկնոջ ամուսինն էր, հիմայ նրա այրին: Յետոյ Թիմուրը հրաման էր տուել, թէ որպէս զի աւազակները վերստին չհաւաքուին եւ չփակուին այստեղ՝ չարունակելու համար*

---

[28] *Համեմատէ* Էփրիկեան, *Բնաշխարհիկ Բառ., Բ., էջ* 64:

[29] *Ռույ Գորցալեզ Կլաւիխոյի ուղեգրութիւնը, թրգմ. Յ. Յակոբեանի, Ուղեգրութիւններ, հտր. Ա, ԺԴ.—ԺԶ. դար, Երեւան* 1932, *էջ* 110:

իրենց վատ արարքները, բերդի մուտքերից պէտք է որ բոլոր դռները հանուեն, եւ երբեք տեղը չդրուեն, մշտապէս բաց թողնելով եւ ապա ամրոցի պաշտպանութիւնը յանձնեց այս տիկնոջ: Երբ մենք այստեղ էինք, գտանք բոլոր մուտքերը տակաւին առանց դռների եւ տեղի անունն Իգդիր է: Բերդը գտնւում է ստորոտը այն մեծ լեռան (կոչուած Արարատ) ուր Նոյեան տապանն իջած է: Այս լեռը, ինչպէս ուրիշ բարձունքները, որ մենք անցել էինք Տրապիզոնից մեկնելուց ի վեր, բոլորովին լերկ էին, չունենալով անտառներ, նոյն իսկ ստորոտի բլուրներում: Իգդիրի ամրոցում մեր յիշատակած տիկինն այդ գիշեր շատ հիւրասիրական ընդունելութիւն տուաւ մեզ, հայթայթելով մեր բոլոր կարիքները»: Յաջորդ օրը Շաբաթ կը մեկնին Իգդիրէն Որկովի վրայէն Բայազիտի կիրճի ճամբով եւ երեկոյեան կը հասնին եւ «Օթեւանեցինք մի բերդում, որ կոչւում էր Բայազիտ» (Անդ, էջ 112): Աւելի հնագոյն վկայութիւն մը Իգդիր անուան ինձ ծանօթ չէ, եւ արդէն անուան ձեւը կը ցուցնէ թէ ինչպէս Յ. Յակոբեան (Անդ, էջ 119, ծանօթ. 10) կ՛ըսէ, Իգդիր անունը ոչ մի կապ չունի ի հարկէ «եղտիւր», մանաւանդ «ե՛կ տէր» բառերի հետ հաւանօրէն Թուրքերէն է»: Նոյն անունով կան նաեւ երկու գիւղեր մին Կարսի Նահանգին մէջ, միւսը Արդաբիլի մօտ:

Ուրեմն Իգդիր՝ իր այս կրկնակի հանգամանքով, թէ իբր դաշտային վայր օժտուած

ըլլալով մերձաւոր բլուրի մը վրայ հաստատուն ամրոցով մը, ըստ ամենայնի կը պատշաճի գիւղ մեծ ընչի արքունի ըլլալու, եւ երբ այսպիսի գուրկ չէ հաւանականութենէ, երբ զայն Արղեանքի հետ նոյնացնել կ՚իշխենք: Որովհետեւ Երասխի այդ հովտին մէջ, իր ընդարձակ տարածութեամբ դաշտերու, գեղեցիկ պարտէզներու եւ այգիներու շատութեամբ եւ շրջակայ Ազատն Մասեաց բլուրներով ու բարձրաւանդակներով իսկապէս արքայավայել գիւղի մը տեսարանը կը պարզէ մեզ Իգդիր = Արղեանք, ուրիշ յարմարագոյն վայր մը արքունի մեծ եւ ամուր աւանի համար այդ տեղ չենք գտներ: Պարապ տեղ չէ որ Փաւստոս ունջ բառը գործածած է, որով ուզած է թէ արքունի հարստութիւնը մատնանշել եւ թէ ի ստորոտս լերանց գտնուիլը գիւղին ցուցնել:

Արքունի հին Պողոտային այս երեք կէտերը որոշելէն վերջ կը մնայ մի քանի խօսք ալ ընել Արմաւիրի բերդին մասին: Եղիշէի բերդերու Թուակարգումին չորրորդ տեղը կը բռնէ Զողկերտէ յետոյ «Բերդն Արմաւրի»: Եղիշէի այս տեղիքն այնպէս հասկցուած է առ հասարակ, որ իբր թէ Պատմագիրն անով Արմաւիր քաղաքն ուզած ըլլայ մատնանիշ ընել, մինչդեռ սխալ է այդ ըմբռնումը: Ինչպէս հայ մատենագիրներու մօտ կայ Բերդն Արտաշատու, որ քաղաքէն դուրս կը գտնուէր «Փախչէին մարզպանն եւ հազարապետն, կը

*պատմէ Փարպեցի*[30]*, ոչ ընդ ուղղորդ տեղիս ճանապարհացն, այլ ընդ այլ եւ այլ տեղիս զերծեալք անկանէին ի բերդն Արտաշատու»: Մինչ երբ քաղաքը մատնանշել ուզեն կը գրեն՝ «Եկին ի քաղաքն մեծ յԱրտաշատ*[31]*, զնահանգն Արտաշատու եւ զԱրտաշատն ինքնին գլխովին*[32]*, ժողովել յԱրտաշատ քաղաք*[33] *են: Հետեւաբար պէտք ենք զանազանել Բերդն Արմաւրի, եւ քաղաքն Արմաւիր: Վերջինս Երասխայ ձախ ափին վրայ կը գտնուի այժմեան Սարդարապատի հարաւ Թափա–Դիբի եւ Ղուրղուղուլ գիւղերով ի միասին Արմաւիրի բլուր կոչուած վայրը, ուր գտնուեցան բազմաթիւ բեւեռագիր արձանագրութիւններ խալդական շրջանէ*[34]*, որոնցմէ երեւան եկաւ թէ Արմաւիր Արգիշտիսի կողմէ շինուած կամ վերանորոգուած է եւ օժտուած է նոյն արքային կողմէ նոր ջրանցքով մը, որուն հունն այսօր ցամաքած եւ աւերուած կը մնայ: Արդ այդ Արգիշտիսի ջրանցքին սկզբնաւորութեան վայրին վրայ, որ կը գտնուի դէմ յանդիման Կարակալայ աւերակ սակայն շատ ամուր բերդին, արձանագրութիւն մը զետեղուած է այդ նշանաւոր արքային կողմէ: Արգիշտիս Արմաւիրը ջրով*

---

[30] Փարպեցի Ղ., *Պատմ.*, *էջ* 121:

[31] Փաւստոս Բուզանդ, *Պատմ.*, *էջ* 145:

[32] *Եղիշէ*, *անդ*, *էջ* 60:

[33] *Եղիշէ*, 77:

[34] Никольски М. В., Клинообразныя Надписи Закавказья, *Թրգմ. Խ. Յովհաննիսեանց*, *Բեւեռագիր Արձանագրութիւններ Ռուսաց Հայաստանում*, *Բազմավէպ* 1897, *գլուխ Բ.*, *Արմաւիր*, *էջ* 197 *եւ յաջորդք*:

օժտելու համար կը ձեռնարկէ այդ մեծագործ ջրանցքին շինութեան եւ յաջողութեամբ ի գլուխ կը հանէ: Վանայ թագաւորներուն սովորութիւնն էր իրենց՝ նման հաստատութիւններ թշնամիներէն պաշտպանել, շինելով ջրանցքի ակնաղբիւրներուն կամ եթէ գետէ սկիզբ կ'առնէր, այդ սկզբնաւորութեան վրայ ամրոցներ[35]: Այսպէս Երասխի աջ ափին ջրանցքին սկզբնաւորութեան հանդիպակաց բարձր առապարի մը վրայ շինուած է հին բերդ մը, երեք կողմէ պաշտպանուած բնական մեծ խրամատներով ու Երասխ գետով, իսկ պարանոցն ալ երկպատիկ հսկայ պարիսպներով աւելի ամուր քան նշանաւոր Սուրմարի ամրոցը[36]: Monpéreux Կարակալան կ'անուանէ Տիգրանակերտ. իսկ Ալիշան[37] կը փափագի զայն Զողկերտի հետ նոյնացնել: Սակայն եւ ոչ մին իրականութեան կը համապատասխանէ: Ինչպէս Արգիշտիի արձանագրութենէն կը տեսնուի Argistiḫini = Արմաւիր

---

[35] Համեմատել այս տեսակէտէ Lehmann-Haupt, Armenien Einst und Jetzt, Berlin 1931, Bd. $II_2$, էջ 466, ուր կը պատմէ Թոպրակ-Կալէի ջրանցքի մասին թէ ինչպէս ջրանցքին ակնաղբիւրին մօտ աւերակ մը գտած են, որ ուրիշ նպատակ չունէր, բայց եթէ քաղաքին համար կարեւոր այդ ջրանցքին ակնաղբիւրը պաշտպանել թշնամիներու առջեւ: Նոյնպէս Անդ, էջ 1058:

[36] Montpéreux Fréd. Dubois de, Voyage autour du Caucase, Paris 1838—1842, 5 voll. Թարգմ. գերմաներէնի Külb H. Dr., Sammlung der vorzüglichsten neueren Reisebeschreibungen. I.—II. Reise um Kaukasus, Darmstadt 1842—1843, Բ. հտր., էջ 143.

[37] Ալիշան Հ. Ղ., Այրարատ, էջ 122—123:

քաղաքին եւ անոր ջրանցքին շինութեան հետ շինուած է նաեւ բերդս նոյն արքային կողմէ ի պաշտպանութիւն թէ ջրանցքին եւ թէ Արմաւիր քաղաքին հարաւէն յարձակման մը պարագային, որովհետեւ Երասխի աջ ափը այս ամրոցէն սկսեալ կը հարթանայ եւ գետը տակաւ կ'ընդարձակէ իր հունը եւ մերթ ընդ մերթ կը խորասուզուի արուեստական եւ նաեւ բնական ջրանցքներու ու խաղերու մէջ եւ այսպէս ջուրերու նուազման շրջաններուն դիւրաւ անցանելի կը դառնայ, որով հարկ էր Արմաւիր քաղաքը պաշտպանելու համար, այդ բնական ամուր վայրին վրայ ամրոց մը հաստատել եւ պահակ մը պահել այն տեղ: Արմաւիր քաղաքն աւելի դաշտային վայրի մը վրայ էր եւ բնական ամուր դիրք մը չունէր, այս պատճառաւ Արմաւիր իբր նշանաւոր բերդի մը համբաւ չունի, այլ իբր հին նուիրական մասամբ դիցաւան մըն էր: Իբր ամուր տեղիք կը ներկայանայ մեզ ուրեմն բերդն Արմաւրի այսինքն «Կարակալան»:

Երասխի հովտին այս նշանաւոր չորս վայրերը որոշելէ յետոյ հարկ է գտնել վայր մը, ուր կարելի ըլլայ Ստրաբոնի եւ մանաւանդ Տակիտոսի նկարագրութեան համեմատ ղետեղել Ողանէ եւ Բաբիւրսա ամրութիւնները: Ստրաբոնի վկայութիւնը կը պահանջէ մերձաւորութիւն Արտաշատի, Տակիտոսի տեղիքն ի՞նչ կ'ընձեռէ մեզի այդ բերդերուն տեղւոյն որոշման համար: Քանիցս հոլովեցինք Համէական Տարեգրոց հեղինակին ա-





նունը եւ յեղյեղեցինք կարեւորութիւնն անոր Վոլանդ ամրոցի մասին տուած տեղեկութեան: Ուստի կ՚արժէ մի քիչ մանրամասն ներկայացնել այդ կարեւոր տեղիքը:

Կորբուլոն երբ ստանձնեց արեւելեան բանակին զօրավարութիւնը 55ին, ուզեց խաղաղ ճամբով Պարթեւ Հայ եւ Հռոմէական վէճը լուծել, սակայն երկարատեւ բանակցութիւնները վերջ ի վերջոյ երկուստեք համաձայնութեան մը չյանգեցան, որով ստիպուեցաւ 57ին զէնքի դիմել: Սկիզբները փոքրիկ զուպարածներով եւ երբեմն երբեմն ստուարաթիւ բանակներու զինուորական շարժումներով, որոնք պարզ ցոյցի բնոյթ ունէին, կ՚ուզէր Թշնամւոյն վրայ ազդել, Հռոմի պայմաններն անարին պարտադրել: Սակայն Տրդատ ոչ մէկ կերպով յօժար ցուցուց ինքն զինքն Հռոմէական պահանջներն ընդունելու: 58 ի գարնան մինչ Տրդատ Հռոմայեցւոց վերջապահներու դէմ վերին Եփրատէն դէպի պոնտական ծովեզրը կը գործէր, արգելք հանդիսանալու համար Հռոմէական բանակներու պարենաւորման Տրապիզոն գծով, Կորբուլոն կը ձեռնարկէ որոշիչ հարուածը տալ Թշնամւոյն՝ արշաւելով ուղղակի անոր Մայրաքաղաքին վրայ: Հասանկալէ — Ալաշկերտ — Իւչքիլիսէ արքունի պողոտայով կը վարէ իր բանակը եւ կտրելով Կուջաղի անցքը միջամուխ կ՚ըլլայ Երասխի հովիտը «Եդ ի մտի այնուհետեւ Կորբուլոն, զի մի՛ յերկարեսցի զուր պա-

տերազմին եւ զի զՀոյս զրգռեալ յօժարե-
ցուցէ պաշտպանել անձանց, աւերել քան-
դել զամուր ամուր տեղիս նոցա. ինքնին իսկ
յանձն առնոյր զբուն անառիկն յայնմ գաւա-
ռին, որ կոչէրն Վողանդ, առնուլ կործանել,
իսկ զմանունսն Կոռնեղեայ Փղակկեայ եւ
Ինստէոսի Կապիտոնի առնէր յանձն: Յետ
այց առնելոյ տեղւոյն շուրջանակի եւ յարդա-
րելոյ զամենայն ի յարձակումն, քաջալերէր
զզօրսն ընդդէմ Թշնամւոյն, որ Թափառէրն եւ
չկամէր ոչ ընդ խաղաղութիւն եւ ոչ ընդ պա-
տերազմ, եւ որ խուսելովն յայտ իմն առնէր
զիւր վատութիւն եւ զնենգութիւն: Յորդորէր
զնոսա հանել ի նմանէ զապաւէնս նորա եւ
ցուցանէր նոցա փառս եւ զաւար միանգա-
մայն: Ապա բաժանէր զիւր զունդն ի չորս
մասունս, զկէսս սահմանէր զի ի մի վայր
կուտեալ գործիցեն կրայ եւ այնպէս փոս
գործեալ բրիցեն զհիմունս բերդին, զկէսս
վասն զսանդուղս յորմունսն մատուցանելոյ
եւ զբազումս դարձեալ վասն ջահս եւ սլաքս
ի մեքենայից ի ներքս արձակելոյ. իսկ պար-
սաւորացն եւ նետողաց սահմանէր տեղիս զի
ի հեռուստ հարկանիցեն զբնակիչսն»: Այս-
պէս պատրաստուելէն յետոյ յարձակումը կը
սկսի, չորս ժամէն պարիսպները կը խորտա-
կուին եւ ոմանք սանդուղներով վեր կ՚ելլեն եւ
կը գրաւուի բերդը եւ կը կոտորուին բերդ-
նորդիք մեծ մասով, իսկ ամբոխը վաճառա-
կուր կ՚ըլլայ: «Տեղակալին եւ վերակացուին
հանդիպէր նոյն յաջողութիւն: Երեք ամրոցք

տռան ի մխում աւուր, մնացեալքն առ ահի եւ կէսք եւս կամակար եռուն ձեռս: Այնուհետեւ քաջալերեցաւ զօրավարն դիմել եւ ի վերայ արքունական քաղաքին Արտաշատու, բայց ոչ դէպ ուղիղ ընդ կամուրջն անցուցանէր զգունդսն, զի այնու արկանէր զնոսա ընդ հարուածովք թշնամւոյն: Գետն Երասխ հոսէ առ պարսպօք քաղաքին: Հեռի ուրեք ի քաղաքէն ապա անցին ըստ գետն ընդ հուն մի լայն ընդարձակ[38]»:

Տակիտոսի այս պայծառ նկարագրութենէն յայտնապէս կը տեսնուի թէ երեք գլխաւոր բերդեր իրարու մերձաւոր կը գըտնուէին այնպիսի վայրի մը վրայ, որ Արտաշատէն ոչ շատ հեռու էր, այնպէս որ անոնց գրաւումով բացուած կը տեսնէ Արտաշատի ճամբան իր առջեւ եւ իսկոյն յառաջ կը վարէ իր գունդը դէպի Հայոց Մայրաքաղաքը: Սակայն խոհեմագոյն կը համարի ոչ թէ կամուրջի վրայէն անցնել զօրքը, այլ հեռաւոր մէկ կէտէն, ուր Երասխի հունը լայն եւ ընդարձակ էր եւ միանգամայն ծանծաղ:

Արդ այն վայրը, ուր Տակիտոսի նկարագրութիւնն իր բոլոր մանրամասնութեամբ եւ ամէն հանգամանքով իր լիուլի լուծումն ու մեկնութիւնը կը գտնէ, մեզ կը ներկայանայ Արտաշատէ ոչ շատ հեռու, նա մանաւանդ թէ անոր հանդիպակաց Երասխի աջ ափին այժմեան Տաշբուրուն — Կարակոյունլու —

---

[38] Tacitus, Annales XIII, 39.

Բաշբուլաղ եռանկիւնը։ Այս եռանկիւնի նկարագրութիւնը հաճոյքով կու տամ համբաւաւոր Ռուս բեւեռագէտին՝ Նիկոլսկիի, որ տեղւոյն վրայ խուզարկութիւն կատարած է անձամբ եւ այնպէս կը նկարագրէ, կարծես Տակիտոսի տեղիքն աչքի առջեւ ունեցած ըլլար, սակայն այդպիսի բան մը Նիկոլսկիին մտքէն իսկ չէր անցներ, որովհետեւ նման դիտաւորութիւն մը կամ կէտ նպատակի մը զինքը չէր առաջնորդած այդ վայրերն այցելելու։

«Նախ եւ յառաջ մեր ուշադրութիւնը գրաւեցին Արարատի այն առաջաւոր բլուրները, որոնց մօտակայքում գտնւում է Տաշբուռունի առաջին բեւեռագիր արձանագրութիւնը, ուր Մինուաս աւանդում է Լուխիունինի քաղաքի նուաճման մասին։ Ի մօտոյ հետազօտելով այդ բլուրները, մենք համոզուեցանք, թէ դոքա մեծ նշանակութիւն ունեցած են Ուրարտեան տիրապետութեան ժամանակ։ Լեռնաշղթայի ամբողջ մասը, որ եռանկիւնի ձեւով դուրս է ցցուած դէպի Երեւանի դաշտավայրը, ակներեւ է, որ ի հնումն խիստ ամրացած էր։ Լերին վերջին ծայրը, դարձրած Տաշբուռունի կողմն, առաջին արձանագրութեան մօտ, երկայնաձիգ բլրի նման է. նորա գագաթի վրայ գտնւում են ամրութեանց հետքեր, որ մենք հետազօտեցինք պեղումներ անելով...։ Մեր առաջ խոր գետնի մէջ մերկացան շինուածոց հիմունքը, մակարդակը, նիւթերը, որոնց դա-

սաւորելու եւ կանգնելու եղանակը յիշեցնում է մեզ Արմաւրի բլրի շէնքերը...

Բայց ամենամեծ եւ նշանաւոր ամրութիւնը Արարատի Տաշբուռունեան սարաւանդի վրայ գտնուած է նորա արեւելեան կողմում, որ նայում է դէպի Բուլաղբաշի լիճը: Արարատի բլուրները լճի մօտ շատ բարձր չեն, բայց լճի ամենալայն տեղերի մօտ կայ մի բարձր բլուր, որի վրայ ելնելով մենք նկատեցինք, որ մի ահագին ամրոցի պատերի մէջ ենք գտնւում, որ ստեղծել է ինքը բնութիւնը, ուր նշմարւում են նաեւ մարդկային աշխատանքի մեծամեծ հետքեր: Բլուրը շրջանի ձեւ ունի, որի տրամագիծը հաւասար է մէկ վերստի. մեծ ծործորը համարեա ամենայն կողմից անջրպետում է դորան Արարատի միւս բլուրներից, որոնց մէջտեղն է ընկնում նա: Բլրի կատարը չորս կողմից շրջապատած է ըստ մեծի մասին անտաշ ահագին քարերի շարքով, բայց մի քանի տեղերում երեւում են պարիսպներ կոփածոյ քարերից: Պարիսպների ներսում նկատելի են կործանուած աշտարակների հիմացորդքը...: Դուրս գալով ծործորից դէպի Բուլաղ-Բաշի մենք նկատեցինք կանոնաւոր, կրկնակի եւ բաւականին լայն վերելքի հետքեր. ճանապարհը մի ժամանակ գեղեցիկ կերպով սալայատակուած է եղել եւ պատուարներով պաշտպանուած: Իսկ ինչ վերաբերւում է ծործորին, պէտք է նկատել, որ դա ամրոցի յետեւում ճիւղաւորուելով տանում է դանա-

դան կողմեր· հասկանալի է, որ այդ ծործոր-ների միջնորդութեամբ հնարաւոր էր հաղոր-դակցել միւս ամրոցների հետ, որոնք սարա-ւանդի միւս կողմումն են, ուր որ առաջին Տաշբուրունեան արձանագրութիւնն է գըտ-նւում:

«Հանգամանքները չներեցին մեզ այստեղ եւս պեղումներ անել, ...սակայն ամրոցն իր մեծութեամբ եւ պատկառելի չէնքով գե-րազանցում է բոլոր մեր տեսած ամրոցները Երասխի հովտում: Մենք, յայտնի բան է, դրաւոր յիշատակարաններ չունինք ապացու-ցանելու, թէ ամրոցի պարիսպները Ուրար-տեան ժամանակներիցն են, վասն զի այս վայրերում տակաւին չեն գտնուած բեւեռա-գիր արձանագրութիւններ...: Բայց եթէ Տաշբուրունի կից բոլոր արհեստական ամ-րութիւններն Ուրարտեան ժամանակներին վերագրելու լինէին, դարձեալ դժուար կը լինէր յարմարացնել դոցա Լուխունինի քա-ղաքին դրից: Վերջինս հաւանական է, որ հովտումն էր եւ յատկապէս արձանագրու-թեան (Կարակոյունլուի մօտ) մօտակայքում, այն բլրի ստորոտում, ուր մենք պեղումներ կատարեցինք· իսկ այդ բլրի վրայ եղած ամ-րոցը կարող էր քաղաքի միջնաբերդը լինել: Տաշբուրունից երեք վերստ հեռու, նոյն ճա-նապարհի վրայ մենք գտանք հարթ հաւասար գետնի ընդարձակ տարածութեան վրայ հին բնակութեանց մնացորդներ, որոնք շարու-նակւում էին մինչեւ մեծ Արարատ: Բայց թէ

սոյն տեղում հնարաւոր է որոնել Լուխունինի քաղաքը, դորա մասին վկայում է երկրորդ արձանագրութեան այս տեղում գտնուիլը: Յամենայն դէպս, եթէ այժմ ճշդիւ չենք կարող ցոյց տալ յիշեալ քաղաքի տեղն, այնու ամենայնիւ կասկած չէ կարող լինել, որ այս վայրերը Ուրարտեան տիրապետութեան ժամանակը շատ նշանաւոր դեր կատարած են»:

«Անմիջապէս արձանագրութեան մօտակայքում մենք գտնում ենք մի շարք ամրութիւններ, որոնց մէկն կրում է իւր վրայ Ուրարտեան ծագման ակներեւ կնիքը· այդ ամրոցները թուով առ այժմ երեք են եւ յարնչութիւն ունէին քաղաքի հետ հովտում, որ անջատուած էր նոցանից Բուլաղ-Բաշի լճով: Այս ամենը միասին առած, ամրոցները լեռներում, քաղաքը հովտում, նոցա անջատող լիճն, կազմում էին մի ամբողջութիւն, կուլտուրական եւ ռազմագիտական մի շատ նշանաւոր կենդրոն: Հայոց ոչ գրաւոր, ոչ էլ բանաւոր աւանդութեանց մէջ մենք չգտանք ոչինչ արձագանգ կամ ակնարկներ այս յիշատակարանների անցելոյն մասին, եւ միայն այս աւերակներում գտնուած երեք բեւեռագիր արձանագրութիւնները լոյս են սփռում այն նշանակութեան վրայ, որ յիշեալ տեղն ունէր ութ դար Քրիստոսից առաջ, այն է թէ դա Վանի թագաւորների համար բանալի էր Երեւանեան դաշտաւայրի: Այս վայրերի նուաճումն թեթեւացնում էր ու

ապահով կացուցանում նորա (Մենուաի) յաջորդների համար եւ մանաւանդ անմիջական յաջորդ Արգիշտիի առաջինի համար, Երեւանի ամբողջ դաշտավայրի եւ մօտակայ Արագածի ու Գէօկ-չայի բարձանց տիրապետութիւնը[39]»:

Առաջին ամրոցին մասին, որուն վրայ Նիկոլսկի պեղումներ կատարած է, տուած նկարագրութիւնը լրիւ չէ, այս պատճառաւ այդ թերին կը փափաքինք լրացնել մեր հայ առաջին բեւեռախոյզ Մ. եպիսկ. Սմբատեանի աշխարհագրական տեղեկութիւններով, զոր Ցոլակերտի[40] բերդը վերնագրով տուած է Արարատ էջմ. թերթին մէջ (1910, էջ 574—576): «Արարատի ափափաներում կայ մի բերդի աւերակ, այդ աւերակի հարաւային ծայրի ստորոտում թողնելով մեր ձիերն ու սայլերը, սկսեցինք բարձրանալ դէպի բերդի

---

39 Նիկոլսկի Բեւեռագիր արձանագրութիւններ, Բազմավէպ 1897, Գլուխ Ա., էջ 194—197, տես վերը ծնթ. 34:

40 Սմբատեան Մ. Եպ. առաջինն է մեր մէջ, որ հոգւով չափ աշխատած է որոնել գտնել հին բեւեռագիր արձանագրութիւններ, այնու յուսալով թէ մեր հին պատմութեան մթին էջերը կարող պիտի ըլլար լուսաւորել: Նա մինչեւ իր մահն այդ ուղղութեամբ աշխատեցաւ Ռուսահայաստանի մէջ երեւան հանել հին արձանագրութիւններ եւ զանոնք տրամադրել Բեւեռագէտներու: Ինքն անտեղեակ էր բեւեռագիտութեան: 1871ին Արարատի մէջ կը հրատարակէ Ցոլակերտի անունով արձանագրութիւն մը: Նա Տաշբուռունէն դրեթէ 6—7 մղոն դէպի հարաւ արեւմուտք Կարակոյունլու գիւղին մօտ հին բերդի աւերակներուն մէջ կը գտնէ այդ արձանագրութիւնը եւ որովհետեւ տեղւոյն բնակիչներուն մօտ այդ մերձակայ վայրերը Ցոլակերտ անունով կը յորջորջուին, այդ անուամբ ալ մկրտեց Սմբատեան բերդն ու արձանագրութիւնը:

գլուխը մեծ դժուարութեամբ եւ նեղութեամբ։ Անհնելի էր ամայութիւնը. մենք պաշարուած էինք աւազակների երկիւղով։ Հասնելով գլուխը աշխատեցինք գտնել բերդի դուները, որոնց մէկի բարաւորի վրայ էր կարծւում արձանագիրը. մեր երկար՝ 3 ժամ որոնումները ոչ մի արդիւնք չունեցան։ Բերդը բաւական տարածութիւն եւ չորս դռներ ունի, շրջապատուած է լայն ու խոր խրամով, պարիսպները ամուր են 3 սաժէն լայնութեամբ մեծ մեծ լեռ քարերով... բերդի գլխիցը երեւում են հարաւային կողմում փռուած չինութեան աւերակները, որին Դաշբուռունցիք քաղաքատեղ են անուանում. իսկ դէպի արեւելք երեւում է ընդարձակ դաշտ մինչեւ Գառնի-Բասարի գիւղօրայքը, լեռները, Խորվիրապայ վանքը եւ Ալիգըլ գիւղը» (էջ 574—575)։

Հարեւանցի ակնարկ մը Տակիտոսի նկարագրութեան եւ այս նորագոյն ականատես ուղեւորներու մեզի ընծայած համառօտ պատկերին վրայ, բաւական է մեզ համոզելու թէ որքան ակներեւ նմանութիւն գոյութիւն ունի այդ երկու նկարագրութիւններու մէջ։ Այդ սքանչելի նմանութիւնն իր հիմն ունի ոչ միայն պատմական, այլ մանաւանդ աշխարհագրական համանուն վայրերու համանուն նոյնութեան մէջ։

Պատմական նոյնութեան մէջ ունի հիմը, որովհետեւ այս նոյնացմամբ իրապէս սքանչելի կերպով կը լուծուին այն բոլոր դժուա-

բութիւնները, որոնք մինչեւ ցայժմ գոյութիւն ունէին եւ իրական եւ էական առարկութիւններն էին, որով կարելի չէր ընդունիլ այն նոյնացումները, որոնք բազմաթիւ հեղինակներու կողմէ առաջարկուած եւ ենթադրուած էին հաստատուելով նմանահնչուն կամ համանուն տեղանուններու վրայ: Արարատեան լեռներու այս վերջին շառաւիղները, որոնց կատարին վրայ կը բարձրանան Ուրարտական եւ ապա անոնց տիրապետողի Հայ ժողովուրդին արքայական ամուր ամրոցները, հազիւ 20—30 մղոն հեռու կը գտնուին Հայոց Մայրաքաղաքէն, Արտաշատէն: Այդ բարձրաբերձ բերդերն իրենց բլուրներովն ու ծործորներով Արտաշատի արտաքին բնական եւ արուեստական պատնէշները կը կազմէին, այս պատճառաւ իրաւունք ունէր Տակիտոս զանոնք Հայոց Մայրաքաղաքին դուռներն՝ իսկ Նիկոլսկի Երեւանեան (այսինքն հին Արտաշատեան) դաշտավայրին բանալին կոչելու:

Համանուն վայրերու համանուն նոյնութեան մէջ, ըսինք: Ունի՞նք առ այդ իսկական հիմ մը: Մեր անցեալը շատ կողմէ կարօտ է խոր քննութեամբ լուսաբանուելու: Շատ բան ինչ որ կը կարծենք թէ գոյութիւն ունի, սակայն իրականին չունի, եւ կան նաեւ շատ մը բաներ, որոնք կը համարինք թէ անհետ կորսուած են, սակայն կենդանի են Սասունցի Դաւթին պէս, միայն քողարկող մշուշը պէտք է փարատել: Նորագոյն բոլոր բանասէրներէն

առ հասարակ ընդունուած է թէ Ստրաբոնի ᾿Ολανή եւ Տակիտոսի Volandumը նոյն են: Արդ ունի՞նք մենք այս Արարատի կամ Մասեաց ոտն գաւառի մէջ համանուն բերդ մը կամ գաւառակ մը: Պատասխանն ուրախութեամբ կրնանք ըսել թէ դրական է եւ այն կրկնակի ձեւով թէ իբր բերդ եւ թէ իբր գաւառակ: Ահա թող խօսին մեր հին մատենագիրները: Նոր անուններն այլատարազ են, խորթ եւ խղուըրտիւն մը մեր ականջներուն:

Առաջին անգամ եօթներորդ դարուն Սեբէոսի մօտ կը հանդիպինք Ուղեաց անունով գիւղի մը ի Մասեաց ոտան: Այն ինչ Քրիստափոր կաթողիկոս ընտրուած էր (628—630) «Բամբասանս ապիրատս յօդէին եւ ապա այնուհետեւ ոչ ըստ իրաւանց ուղղոց ինչ, այլ կամակար մտօք ըստ կամս անձանց հաստատէին վճիռ՝ անկանել նմա ի պատուոյն: Իսկ նորա իւրովի կամաւ խոյս ի չարէն տուեալ, երթեալ շինէ միայնարան մեծ մերձ ի գիւղն Ուղեաց որ ի Մասեաց ոտան, եւ բազում միանձունս առ ինքն գումարեալ[41]»:

Եթէ Սեբէոս Ուղեաց անունով գիւղ մը գիտէ, անոր յաջորդ պատմագիրը Ղեւոնդ մեզի կը ներկայացնէ Ուղայէոյ գաւառ մը. «Եւ նոքա (այսինքն հայ իշխանազունք Սմբատ եւ Վարդ) գնացեալ ընդ եզր գետոյն Երասխայ անցանէին ընդ սահմանս Ուղայէոյ եւ

[41] Սեբէոս, Պատմութիւն ի Հերակլ, Թիֆլիս 1913, էջ 306: Տես նոյնպէս Յովհ. Կաթող. Պատմութիւն, Թիֆլիս 1912, էջ 76:

հասանէին ի մեծ աւանն Ակոռի: Իսկ զօրքն Իսմայելի, որ էին ի Նախջաւան քաղաքի յարձակեցան զկնի նոցա եւ ոչ մեկնեցան ի հետոց նոցա. քանզի էին աւելի քան ԵՌ, եւ կամէին կենդանւոյն կլանել զնոսա: Եւ իբրեւ ազդ եղեւ զօրուն Հայոց վասն հինին, որ զարթուցեալ զայր ի վերայ նոցա՝ յարուցեալ անցին ընդ գետն Երասխ եւ բանակեցան ի Վարդանակերտն աւանի. եւ զօրն Տաճկաց պնդեալ զայր զկնի նոցա[42]:

Իսկ Թովմաս Արծրունի մեզի կու տայ նաեւ մեր խնդրածը Ուղեայ բերդ մը եւ միանգամայն գաւառ մը Մասեաց ոտին մէջ: Ահա՝ «Բայց ի գնալն Յուսփայ ամիրային ի Պարսս, գնաց եւ Թագաւորն Գագիկ ի գաւառն Կոգովիտ եւ պաշարեալ զանառն Դարինս՝ զողացեալ առնու ի գիշերի, ըստ յաջողելոյ նմա ի վերուստ առնու զբերդն Մակուայ եւ անտի յառաջ մատուցեալ առնու զԲերդն Ուղեայ եւ տիրէ գաւառաց սկսեալ ի Կոգովտէ մինչեւ ցմիջոց Ուղեայ եւ Մասեաց ոտն:

Այս երեք կարեւոր վկայութիւններէն մենք կ'ունենանք յիշատակուած մեծ գիւղ մը, գաւառ մը եւ Բերդ մը Ուղեաց, Ուղայէոյ եւ Ուղեայ սեռականներով, որոնց ուղղականը կարելի է ենթադրել Ուղիք Ուղայէ: Ամէն պարագային կը ներկայացնէ Ola-ne = Volandum յոյն եւ լատին հեղինակներու աւանդած արմատը: Արդէն լատիններէն Uolan(d)um

---

[42] Ղեւոնդ Երէց, *Պատմութիւն*, *Պետերբուրգ* 1887, էջ 24:

Uol = հնագոյն ձեւը կ'ենթադրէ թէ սկիզբի ձայնը Աի եւ Օի խառնուրդ մըն էր, եւ որ հայերէնի մէջ օրինաւորապէս «ու» մը պիտի տար· նաեւ յունական մատենագիրներու մօտ օ կամ ω ով գրուած հայ տեղանունները հայերէնի մէջ շատ յաճախ կը ներկայանան «ու»ով, այսպէս Γωγαρηνῃ = Գուգարք Βασοροπέδαν-*Οὐασποράκαν = Վասպուրական[43], Καθολιχός, Կաթողիկոս եւ Կաթուղիկէ: Γωγαρηνῄ = Գուգար-f համեմատութիւնն ինքնին երաշխիք մըն է թէ Ο λανῄ եւ Vola-n(d)um վերջաւորութիւնը յունարէնին եւ նաեւ շատ հաւանական է որ նախահայոց, այսինքն Խաղտեաց յատուկ էր: Արդէն Հայերէն Ուղի կամ Ուղայէ ձեւը հայերէնով դժուար է մեկնել· հաւանական է որ Ուրարտական կամ Կովկասեան անուն մըն է, որ բերդերուն հետ միանգամայն տեղանունն ալ Հայոց քով կենդանի մնացած է: Արդէն վերը Նիկոլսկիի վկայութեան մէջ խօսք կ'ըլլար Luḫiunini քաղաքանուան մը մասին, զոր կը յիշէ Մենուաս իր Նշանաւոր Տաշբուռունեան 24 տողեան արձանագրութեան[44] մէջ: Աշխարհակալ ար-

[43] Հմմտ. Հիւբշման Հ., Հին Հայոց տեղւոյ անունները, Վիեննա 1907, էջ 17—18:

[44] 1864ին կեստներ Կարակոյունլուի մօտ աւերակ բերդին վրայ կը գտնէ Մենուասի այդ կարեւոր արձանագրութիւնը: Քանիցս հրատարակուած է այդ, սակայն լաւագոյն հրատարակութիւնը կատարած է Նիկոլսկի վերը 34 ծանօթութեան ռուսերէն գործին մէջ, էջ 22—26: Նախապէս Մոսկուայի Կայսերական Հնագիտական ընկերութեան պարբերական թերթին Древности Восточныя. հատ. Ա., Մասն 3, Մոսկուա 1893, էջ 416 եւ յաջ:

քան իր յուշարձանով կը ծանուցանէ թէ *Eriduaḫi* կամ *-ḫini* երկիրն իր Luhiunini քաղաքով նուաճեցի եւ քաղաքին անունը փոխեցի Մենուաաաւանի: Eridua գաւառանունը Գրիգոր Խալաթեանց[45] «Մի քանի աշխարհագրական անուններ Հին Հայաստանի» Յօդուածին մէջ (էջ 125) կը նոյնացնէ Վասպուրականի Հայոց ձորի մերձաւոր Երիթունիք գաւառին հետ, որքան ալ արտաքին նմանութիւնը հրապուրիչ է, սակայն հեռաւորութիւնն ի՞նչպէս մեկնելու է, հետեւաբար անհաւանական կը համարիմ, եւ պիտի առաջարկէի Արդեանք մեծ աւանին անուան հետ նոյնացնել, որ յայտնապէս կազմուած է Ար(ի)դ– արմատով եւ –եանք հայ սովորական ածանցով. օր. Աբեղեանք, Գաբեղեանք են: Միայն դժուարութիւն կը յարուցանէ Ե = Ա փոխանակութիւնը: Սակայն հայ անուանց մէջ այդ երեւոյթը շատ սովորական է, այսպէս Երամաւնք (Եղիշէ, անդ, էջ 60) = Արամօնք (Յովհ. կաթ., էջ 104/105), Երուանդունիք (օր. մի Երիթունիք) (Մ. Խոր. Աշխ. Սիւքր., էջ 32) եւ Արուանթունիք (Թովմաս Արծր., անդ էջ 197): Այս օրինակներն ալ հաւանաբար նախահայկական են: Խալաթեանց «Luhiunini»ն Նիկոլսկիի հետեւելով կ'ենթադրէ որ յոյն մատենագիրներու՝ Սեւանայ լճին հա–

---

[45] Древности Восточныя, հատոր Բ, Մասն Բ, Մոսկուա 1901, հետեւեալ վերնագրով Յօդուած մը ունի О Некоторых Географических Названиях Древней Армении, էջ 120—131:

*մար գործած Λυχνίτιςի հետ նոյն ըլլայ (Անդ, էջ 121) . իսկ* Ուղայէ *կամ* Ուղիէ*ի համապատասխան կը գտնէ Էյլարի արձանագրութեան մէջ յիշատակուած* Uluani *երկրանունը : Այս վերջին նոյնացման խոչընդոտն կը ներկայանայ դարձեալ տեղւոյ անջրպետը : Իսկ մեզի համար նոյն իսկ հնարաւոր է* Luḫiuni *Ուղխքի հետ նոյն դնել ենթադրելով որ* Luḫiuni*ի* L *տառը մասամբ ձայնաւորի մը ընկերակցութիւնն ունէր* u̥Luḫi *կարճ եւ լպրծուն* u̥ *մը ունէր արտասանութեան մէջ, որով հայերէնի մէջ* ու *մը իսկ Ստրաբոնի մօտ* օ *մը կրնար տալ : Աւելի հեշտ է բնականաբար լեզուաբանօրէն* Uluani = *Ուղայէ հաւասարութիւնը մեկնել, բայց աշխարհագրական դիրքերն արգելք կը հանդիսանան, հաւանական կը համարինք այն ենթադրութեամբ, որ Էյլարի տեղւոյն յատուկ* Uluani *երկրանուն կամ գաւառի անունը ինչպէս սովորական է գաղթականութեամբ փոխադրուած է կամ վերակոչուած է :*

*Այսպէս թէ այնպէս մեր նոյնացման համար մեծ դեր մը չունի այդ արձանագրութեան այս կամ այն անուան համապատասխան ձեւը : Խաղտական արձանագրութիւնները տակաւին լիակատար հրատարակուած եւ քննութեան չեն ենթարկուած . Հետեւաբար ապագայի գործ է տեղւոյն հայող հայերէնի համապատասխան անունն երեւան բերել եւ կամ լեզուաբանօրէն, մեր ենթադրութիւնը՝* ու*ի կամ* օ*ի մը յաւելուածը, հաւանա-*

*կան գործել Ուրարտական կամ Կովկասեան լեզուներու օրէնքներուն համեմատ։*

*Ուղիք կամ Ուղայէի (գաւառին, բերդին, գիւղին) դիրքը անորոշ կը համարուէր, այսպէս Ալիշան (Այրարատ, էջ 486), Փոքր Մասիսի հիւսիսային հովտին մէջ Վէլիճան անունով յիշուած գիւղի մը հետ կ՚ուզէ թէութեամբ նոյնացնել. «Ոչ է յայտ ստուգիւ որպիսի ինչ էր եւ կոչէր ի հնումն գեօղն այն, այլ մարթ է նոյն համարել ընդ միակ յիշատակելոյն ի նախնեաց յայսմ գաւառի, ընդ* Ուղեաց *գեղջ, կամ Ուղայիոյ կամ Ուղէոյ, զի պէսպէս գրի. եւ ոչ միայն գիւղ վարկպարագի, այլ եւ բերդ ունէր եւ առանձնակ իմն դեհ թուի կամ գաւառակ, յերի դեռ իսկ նշանակեալ վայրացս, այսինքն ի Թիկանց փոքուն Մասեաց, եւ ընդ մէջ Կողովտի եւ Արտազու»։ Ապա յառաջ կը բերէ վերոյիշեալ վկայութիւնները։ Սակայն տուած սահմանը ճիշդ չենք գտներ, որովհետեւ նոյն իսկ հայ մատենագիրներու վկայութեան համեմատ Ուղայէ ըստ ամենայնի կը բռնէր Մասեաց ոտն գաւառին բլրաշխարհը, Ակոռիէն սկսեալ, զի անցանէին ընդ սահմանս Ուղայէոյ եւ հասանէին ի մեծ աւանն Ակոռի, կ՚ըսէ Ղեւոնդ, եւ երբ թշնամւոյն զալուստը կ՚իմանան «յարուցեալ անցանէին ընդ գետն Երասխ»։ Թովմայի «ցմիջոց Ուղեոյ եւ Մասեացն ոտն», եւ Սեբէոսի «ի մեծ գիւղն ի Մասեաց ոտան». բացատրութիւնները Փոքր Մասիսի արեւելեան ստորոտին վրայ կարելի չէ զետեղել, այլ մեր մատ–*

նանչած տեղը. Հարաւէն Ակոռի, հիւսիս արեւմուտ Բուլաղ-Բաշի եւ Կարակոյունլու մինչեւ հիւսիս ուղղակի գծով Երասխ եւ արեւելքէն նոյնպէս Երասխ գետը: Թէ Ուղայէոյ գաւառն այս տարածութիւնն ունէր, Թովմասի մէկ անուղղակի վկայութենէն ալ կը հաստատուի: «Ի սոյն ժամանակս այր մի արաբացի ազգաւ» 13 հազար հոգինոց բանակով մը հարաւէն Ատրպատականէ կը մտնէ Հայաստան, կը յառաջանայ մինչեւ Դուին եւ կը գրաւէ զայն. Սմբատայ որդիէն, Աբասէն, հարկ կը պահանջէ, Աբաս կը զլանայ, եւ զաղտնի Գագիկի՝ Արծրունեաց թագաւորին օգնութիւնը կը խնդրէ: Սակայն յառաջ քան «զգալուստն Գագկայ» թշնամւոյն հետ կը զարնուի եւ կը պարտուի: Գագիկ լուեալ զգոյժ աղաղակիս հասանէ ի դուռն Դունայ յեզր գետոյ Երասխայ, հանդէպ վիրապին սրբոյ: ...Իսկ այլազգին յորժամ ետես զբանակ արքային մեծի սփռեալ առ լերամբն Գինոյ կոչեցեալ Բլեր»: Այս Բլուրն Գինոյ է այն ամրոցը, զոր Նիկոլակի մեզ ներկայացուց վերը. Գինոյ գետին աջբերակին վրայ կը բարձրանար եւ իր հաստատութեամբ եւ գերիշխող դիրքով ամէն կողմէ մանաւանդ Երասխի միւս ափէն սքանչելի կը տեսնուի: Հաւանաբար այս բերդն էր, որ Գագիկ ժամանակին գրաւած էր իբրեւ զԲերդն Ուղեոյ եւ յինքն հանած բովանդակ գաւառն Ուղեոյ եւ Մասեաց ոտն: Թշնամւոյն բանակին համեմատութեամբ արքային զունդը շատ սա-

կուամթիւ էր եւ հետեւաբար հարկ անհրաժեշտ էր ամուր տեղ մը ապաստանիլ եւ ահա իր սեպհական ամրոցին մէջն է որ կը հաստատուի: Թշնամին լիայոյս իր բանակին թուական առաւելութեան վրայ յարձակում կը գործէ արքային դէմ, սակայն սա «իբրեւ կայծակն ընդ եղէգն հարեալ այնպէս խորտակեաց զուազմաց զօրուն այլազգեաց» (Պատմ., էջ 300—301): Եթէ տակաւին տարակոյս մը յարացուի այս մեր նոյնութեան դէմ, Տակիտոսի վկայութիւնն յայտնապէս կը բառնայ այդ կասկածն ալ, «sibique quod validissimum in ea praefectura, cognomento Volandum, sumit» (ԺԳ, 39): Ինչպէս մեր քով նմանապէս Տակիտոսի մօտ թէ գաւառն թէ բերդերէն ամրագոյնը նոյն անունն ունէին:

Այժմ կը մնայ Բաբիւրսայի տեղն ու դիրքը որոշել: Ստրաբոնի վկայութիւնը պարզ է, այս երկու Բերդերն իրարու քով կը գտնուէին: Մենք ունինք առ այժմ, ինչպէս Նիկոլսկի կ՚ըսէր, երեք ամրոց: Այս երեքէն մին ծանօթ է մեր մատենագրութենէն Փառախոտ անունով, որ Բուլաղ-Բաշի մօտ կը գտնուի, իսկ Կարակոյունլուի մերձակայ ամրոցը, որ իր քաղաքատեղիով Luḫiuni կ՚անուանուէր Ուրարտական շրջանին, կը համապատասխանէ Ուղեոյ բերդին կամ Ὀλάνην, ուրեմն երրորդը պիտի կոչուէր Βάβυρσα: Ըստ Ամստերդամի 1707ի հրատարակութեան տարբերակ մը կը նշանակուի Βάμβυρσα: Այս անունը ծանօ՞թ էր արդեօք հայ մատենագիր-

ներու, հարց կը տրուի բնականաբար։ Մանանդեան վերոյիշեալ գործին մէջ Պտղոմէոսի քարտէսին վրայ *Babila*[46], Բագաւանի մօտ նշանակուած անուան հետ կը նոյնացնէ, անդրադոյն քննութեանց միջամուխ չ՚ուզեր ըլլալ։ Այն ձեւով ինչպէս Ստրաբոնի այժմեան օրինակները կը ներկայացնեն, հայ մատենագիրներու մօտ չենք գտներ աստ եւ այժմ։ Հաւանական է որ հայ ծանօթ անուան մէկ աղճատեալ եւ կամ հնագոյն սակայն ամէն պարագային մասամբ այլափոխուած ձեւը կը ներկայացնէ «Բա(ր)բիւրսա»ն։ Թէ որքան հայ աշխարհագրական անունները յաճախ այլաձեւ տարազով կը ներկայանան օտար մատենագիրներու մօտ մի քանի օրինակ կ՚արժէ այստեղ ներկայացնել։ Ըստ Մարկուարտի[47] ուղղումներու Պտղոմէոսի քարտէսին վրայ նշանակուած Βαιοβίτον կը համապատասխանէ հայ Ἀλιοβίτα = Աղիովիտ, Առիանոսի Λολοβητηνή հաւանաբար կ՚ենթադրէ ΧοΓοβητηνή = հայ Կոգովիտ, Կոգայ-Ովիտ։ Այսպիսի այլափոխութիւններ աչքի առաջ ունենալով կը համարձակինք հետեւեալ ենթադրութիւնն ընել, Ամստերդամեան տարբե-

[46] Khanzadian Z., Atlas Historique, Paris 1920, Planches IV, Պտղոմէոսի քարտէսին Արտաշատայ արեւմուտը կայ BRIZACHA, զոր կարելի է Barizacha ալ կարդալ, մեր ենթադրութեան աւելի կը համապատասխանէ, թէ՛ հնչման կողմանէ եւ թէ՛ գիրքին։ Մինչդեռ Babil ոչ գիրքով եւ ոչ ալ ձեւով Babyrsaի մօտ է։

[47] Markwart Jos., Südarmenien und die Tigrisquellen, Wien 1930, S. *13—*14.

րակն ուղիղ անուան աւելի մերձաւոր մէկ ձեւը նկատելով նոյն կը համարինք Բարձրաբուղ բերդին անուան հետ, զոր Եղիշէ կը յիշէ (Պատմ·, էջ 52)։ «Յայնմ ժամանակի զարձեալ յարձակեցան ի վերայ բերդիցն եւ աւանաց, զոր ունէին Պարսիկքն ի տեղիս տեղիս, յամրոցս աշխարհին· տապալէին քանդէին զբնակութիւնս նոցա։ Առաջին զմեծն Արտաշատ հանդերձ աւանօք իւրովք· եւ առնուին զանմատոյց ամուրսն զԳառնի քաղաքն, զԱնին, զԱրտագերս եւ զաւանս իւրեանց· զԵրկայնորդսն եւ զԱրհնին, եւ զաւանս իւրեանց· զԲարձրաբուղն (օր· մի Բարձրաբողն), զՄորանխառն, զԾախանխառն, զանկասկածելի Ողականն, եւ ընդ նոսա եւ զաւանսն իւրեանց· զԱրփանեալն, զՎանն աւան, ընդ նմին եւ զաւանսն իւր· զԳուեալն եւ զԿապոյտն, զՈրոտն եւ զՎասակաշատն»։ Եղիշէի այս ամրոցներէն հազիւ մի քանին ծանօթ են իրենց տեղովն ու դիրքով, միւսները տակաւին օդի մէջ են։ Միայն ուշադիր ընթերցումն այս տեղիքին՝ մեզ այն կէտին կ՚առաջնորդէ, թէ Եղիշէ իր բերդերու թուակարգումին մէջ Արտաշատը նկատած է կեդրոն, որմէ կը ճառագայթեն բերդերու շառաւիղները· 1· շառաւիղ Գառնի–Արտագերս, 2· Երկայնորդ–Արհնի, 3· Բարձրաբուղ–Ողական, 4· Արփանեալ–Վան, 5/6· Գուեալ–Կապոյտ, Որոտն–Վասակաշատ։ Այդ հնոցէն արձակուող այս 5—6 ճառագայթներու առաջին անգամները Արտաշատի մերձաւոր ամրոցները

կը կազմեն ։ Այս տեսութեամբ Բարձրաբուղն ուրեմն կարելի է Արտաշատի մերձ համարել, եւ Բարբերդայի հնչման մերձաւոր նմանութեան հետ միանգամայն տեղն ու դիրքն ալ որոշել Ուղայէոյ բերդին կողքին ։ Նաեւ Տաշքուռուն Թրքական բացատրութիւնն այդ տեղւոյն, կարծես Բարձրաբուղ անուան թարգմանութիւնը կու տայ ։ Բարձրաբուղ կազմուած Բարձր–Բուղ կամ Բող բառերէ, վերջինս հաւանաբար Բլուր բառին արմատն է, որ առանձին չի գործածուիր հայ մատենագրութեան մէջ, սակայն կայ գաւառականներուն մէջ (տես բլուր բառը Աճառեան, Արմատ· Բառարան, հատոր Է) ։

Միւս կողմանէ նկատելով Փառախոտի այնքան մերձաւորութիւնը Արտաշատի, իր հոյակապ ու անառիկ դիրքը եւ հաստատուն կառուցուածքն եւ միանգամայն իր նշանաւոր հնութիւնը, դժուար է խորհիլ թէ Ստրաբոնի ուշադրութենէն վրիպած ըլլայ այս բերդը, ուստի հնարաւոր է թէ այս անուան մասամբ աղճատեալ ձեւը կը ներկայացնէ Β·(ρ)-βυρσον ։ Զողկերտ = Յոլակերտ գրչութիւնն իսկ կը վկայէ թէ նախապէս հայերէնի մէջ ալ Փառախոտի սկզբնատառը գուցէ այդ թաւացումը չունէր, թերեւս «Բ» կամ «Պ» կը ներկայացնէր, որովհետեւ Պեւտինգերեան քարտէսին վրայ կը տեսնուի Paracata ձեւով, իսկ Notitia Dignitatum[48] ի քարտէսին վրայ

[48] Khanzadian Z., Altas de Géographie, Historique d·· l'Arménie, Paris 1920, Planche V. Notitia Dignitatum de l'Empire Romain.

Parataca, նշանակուած Արտաշատի հարաւը: Հնագրական[49] տեսակէտէ կրնայ դիւրաւ BAPAXOTA ձեւէն BAPBYPCA սխալագրութիւնը յառաջ գալ: B = A. Y = X. P = O եւ նոյնպէս T = Cի շփոթութիւններու յաճախ հին ձեռագիրներու մէջ կը պատահինք:

Մեր այս քննութիւններով ուրեմն կը յանգինք այն արդիւնքին թէ Ὀλανή = Ուղայէ Ուղեաց, Βαραχοτα / Βαβυρτα = Փառախոտի, միացած Տաշրուռունեան ամրոցին Բարձրաբուղ = Պտղոմէոսի Barizachaի կը համապատասխանէ:

---

[49] Հնագրական գրերու տեսակներու համար համեմատէ. Gardthausen V., Griechische Palaeographie, II. Bd., Die Schrift, Unterschriften und Chronologie, Leipzig 1913, I. Tafel, 1.—2. դար:

# 2 ԴՐԱՍԽԱՆԱԿԵՐՏ

Եղիշէ (էջ 60) կը գրէր. «Աւերեալ զբազում տեղիս Հայոց աշխարհին, մանաւանդ ձմերոցս արքունի, որ կայեանք զօրացն էին, զԳառնին եւ զԵրամօնս եւ զԴրասհանակերտն (Անձեւացեաց օր. Դրասխանակերտն) զմեծ դաստակերտն, զՎարդանաշատն եւ զամուր Օշական» եւն (տես վերը)։ Երկրորդ վկայութիւնն ունինք Խորենացիէն[50]. «Յայնմ ժամու եւ ազգային նոցա Կամսար մկրտի իւրայովքն հանդերձ ի ձեռն մեծի Գրիգորի. արքայի ընդունելով ի ջրոյն՝ տալ նմա ժառանգութիւն զմեծ դաստակերտն Արտաշիսի, որ այժմ ասի Դրասխանակերտ (տարբերակ մը Դասհոնակերտ), եւ զգաւառն Շիրակ»։ Երրորդ վկայութիւն մը կը յիշէ Չամչեան (Պատմ. Հայոց, Բ., էջ 1015)։ Բայց սակայն ինքն Յովհաննէս կաթողիկոս ի քաղուածո կաթողիկոսաց գրէ զանձնէ իւրմէ լինել ի Դրասխանակերտէ կամ ի Դասհոնակերտէ, յասելն «Յաշակերտութենէ նորին սրբոյն Մաշթոցի, այլ եւ արեան հարազատութեամբ մերձաւոր սմին գոլով եւ հայրենեօք ի մեծ

---

50 Պատմութիւն Հայոց, Տփղիս 1913, էջ 241։

դաստակերտէն Դրասխանակերտէ, եւ ընկա-
լայ զաթոռ նորին ի ՅԽՁ թուականութեանս
Հայոց»: Դաստակերտիս տեղւոյն մասին Ջամ-
չեան (Գ. հատոր ցանկին մէջ, էջ 146) կը
գրէ «Դրասխանակերտ կամ Դասհոնակերտ
աւան առ սահմանօք Դունայ եւ Գառնւոյ,
ըստ ոմանց մօտ ի Շիրակ»: Ինճիճեան մա-
տենագրական տեղիքը միայն ունի (Հին
Հայաստան, 518), Ալիշան բնաւ իսկ չի յի-
շեր ոչ Այրարատի եւ ոչ Շիրակի մէջ, իսկ
Էփրիկեան (Բնաշխարհիկ) «Պատմական աւա-
նիս աւերակներն եւ գիւղն անգամ ցարդ ան-
ծանօթ կը մնան մեզ»: Հիւբշմանի համեմատ
(Հին Հայոց Տեղւոյ անունները, էջ 338)՝
«Դրսհանակերտ կ'իյնար Այրարատ նահան-
գին մէջ մերձաւորապէս ընդ մէջ Շիրակայ
եւ Կոտէից»: Նոյնը կը կրկնէ նաեւ Կոգեան
(Կամսարականները, Վիեննա 1926, էջ 36,
73): Հիւբշմանի տուած սահմանն ալ ան-
բաւարար է, ուրեմն ո՞ւր կը գտնուի աւանս:

Եղիշէի տեղիքին ուշադիր ընթերցումը
կը մատնանշէ Դրասխանակերտի վայրն ընդ
մէջ Երամօնքի եւ Օշականի: Պատմագիրս
ինչպէս վերը նկատեցինք իր աշխարհագրա-
կան վայրերը որոշ կարգով մը կը թուէ,
նոյնն այստեղ աւելի յայտնի երեւան կու գայ:
Արտաշատն ելակէտը կը կազմէ, որուն հիւ-
սիս արեւելքը կը դնէ մեզի քաջ ծանօթ
Գառնին, որմէ հիւսիս արեւմուտ շեղելով
մեր առջեւ կը հանէ Երամօնք այժմեան Արա-
մուս (հմմտ. Յովհ. Շահխաթունեանց, Ստո-

բագրութիւն, էջմիածին 1842, հատոր Բ, էջ 162, թիւ 441, նոյնպէս Ալիշան, Այրարատ, էջ 289) եւ նոյն ուղղութեամբ առաջնորդելով կը հասցնէ մեզ ծանօթ Աշտարակ գիւղը, որ թէ իր դիրքով եւ թէ իր հնութեամբ կարեւոր աւան մը եղած է: Աշտարակ անունն առաջին անգամ կը յիշատակէ Ասողիկ ԺԱ. դարուն «Տէր Գէորգ յԱրագածոտնէ ի գեղջէ Աշտարակայ» (Պատմ. 106). կայ նաեւ համանուն գիւղ մը Բագրեւանդի մէջ (Անդ 82): Հակառակ գիւղին մեծ հնութեան, նոյն իսկ խաղտական շրջանի նկարագիր ունին իր բերդերու պարիսպներու աւերակներն, միայն ԺԱ. դարու այս յիշատակութիւնը մեզ տարօրինակ կը թուի, այս պատճառաւ շատ հաւանական կը թուի, թէ նախնաբար այդ աւանն այլ անուն ունէր: Աշտարակը պարզ ժողովրդական անուն մը եղած է, իր բերդին եւ պարիսպներուն բազմաթիւ աշտարակներէն առնելով յորջորջուած է այդպէս, իր հին անունն է ըստ Եղիշէի կարգին եւ Մովսէս Խորենացւոյ վկայութեան մեծ Դաստակերտն Արտաշիսի, որ է Դրասխանակերտ:

Մանանդեան իր՝ մեզմէ յաճախ յիշատակուած Հին Հայաստանի ճանապարհներ գործին մէջ (էջ 117—120), Արտաշատ—Սեբաստուպոլիս ուղիին առաջին Կայարանը, որ Պեւտինգերեան քարտէսին վրայ Արտաշատէն 30 հռոմ. մղոն այսինքն 45 կիլոմետր հեռաւորութեան վրայ նշանակուած է Strangira, իսկ Ռաւեննացւոյ մօտ Stranguria, «Ուշա-

գրաւ է եւ հետաքրքիր, կ՚ըսէ, որ հենց այս ճանապարհի վրայ եւ Արտաշատից մօտ 45 կիլոմետր հեռաւորութեան վրայ գտնւում է այժմ Աշտարակ գիւղը, որն ինչպէս կարծում են, նշանաւոր կենդրոնավայր է եղել հնագոյն ժամանակներում: Եւ ինձ թւում է, որ անհաւանական չի լինի ենթադրել, որ Strangira կամ Stranguria տեղանուան մէջ կարող է պահպանուած լինել, գուցէ եւ աղճատուած ձեւով, այժմեան Աշտարակ գիւղի հին անունը, որը, դժբախտաբար, յիշատակուած չէ մատենագրական հնագոյն երկերում» (էջ 119):

Ինչ որ սուր հոտառութեամբ մը կռահած էր Մանանդեան, մեր համեմատութիւնն եւ նոյնացումը Աշտարակ = Դրասխանակերտ, ստուգութիւն կը զգենու եւ մենք գեղեցիկ կերպով պահուած կը գտնենք հին անունը ոչ միայն հայ Մատենագիրներու մօտ, այլ նաեւ Strangira կամ Stranguria աղաւաղուած ձեւերուն մէջ գրեթէ էական կազմով: Մի քայլ եւս կը համարձակինք յառաջանալ եւ հաստատել թէ նոյն իսկ Պտղոմէոսի քարտէսին ճիշդ տեղւոյն վրայ մատնանշուած կը գտնենք Դրասխանակերտի մերձաւոր՝ գուցէ անուան հնագոյն ձեւը Dranisa, Talina աւանին հարաւ արեւելքը 76—77 աստիճաններու գծին վրայ. լայնութեան 43,50 (տես Խանզատեան անդ. քարտէս 8, տախտ. IV): Պտղոմէոսի այս անունը կը յիշեցնէ մեզ Էյլարի արձանագրութեան մէջ յիշատա-

կուած նախահայկական Daranini (Հմմտ. Նիկոլսկի վերը 34 թ. ծանօթութեան ռուսերէն գործին մէջ, էջ 101—105) քաղաքին անունը, զոր Խալաթեանց վերոյիշեալ Յօդուածին մէջ (տես ծանօթ. 45) Darani = Տարօնի հետ կ'ուզէ նոյնացնել (Անդ, էջ 128), սակայն ճիշդ չէ, որովհետեւ իր սկզբունքը սխալ է, ամէն նմանահնչուն անուն անպատճառ նոյնն ըսել չէ, պէտք են միանգամայն աշխարհագրական տուեալներն ալ նոյնանալ կամ համաձայնիլ:

Strangira կամ Stranguria բառերուն gira/guria վերջաւորութիւնը պարզ աղաւաղումն է —«կերտ»ին, ինչպէս շատ յաճախ կը տեսնուի Պետինգերեան հայ անուններու վրայ, Stran = Դրասխան ի համազօրը կը կազմէ նոյնպէս աղճատուած: Եթէ Դրասխանակերտ անունը հայ մատենագիրներուն քով իսկ պէսպէս գրչութեամբ պահուած է, այսպէս Դրսհանակերտ, Դրասհոնակերտ, Դասհոնակերտ, Դրասխանակերտ, ինչ կարելի չէ սպասել օտար մատենագիրներէ կամ գրիչներէ:

Այսպէս ուրեմն կը հարթուին այն դժուարութիւնները, զոր ունեցած էր Մանանդեան Արտաշատ — Strangira կայարանն հաստատելու եւ նոյնացնելու Աշտարակի հետ: Միւս կողմանէ Եղիշէէն եւ Խորենացիէն հռչակուած ու ներբողուած ամրոց մը կը գտնէ իր տեղն ու դիրքն, իր գոյութեան իրաւունքն երկրի վրայ եւ ոչ թէ օդի մէջ:

*Եղիշէի Թուակարգումի համեմատ Դրասխանակերտէն յետոյ կու գան Վարդանաշատ եւ ապա ծանօթ Օշական ամրոցը։ Այս վերջին բերդիս եւ Դրասխանակերտ—Աշտարակի սահմաններուն մէջ խնդրելու ենք նաեւ Վարդանաշատ տեղով ու դիրքով անծանօթ ամրոցը, որ ըստ իս Ամբերդ կամ Անբերդ հին անառիկ բերդին հետ նոյն է։*

---

## 3. ՎԱՐԴԱՆԱՇԱՏ

Միակ կարեւոր վկայութիւնը, զոր ունինք Վարդանաշատի համար, կը ներկայանայ Եղիշէի վերյիշեալ տեղիքը (էջ 41)․ «Յետս կացեալ (Վասակայ) յուխտէն քրիստոնէութեան եւ աւերեալ զբազում տեղիս Հայոց աշխարհին, մանաւանդ զձմերոցս արքունի, որ կայեանք զօրացն էին, զԳառնին եւ զԵրամօնս եւ զԴրսհանակերտն զմեծ դաստակերտն, զՎարդանաշատ եւ զամուրն Օշական» եւն (Պատմ․ 60)։ Կը յիշուի նաեւ Վարդանի մօտ համանուն գաւառ մը «Ջադաղա Նոյինն էառ զԼօռէ քաղաք եւ որք յայնր կողմանէ գաւառք, Դոլադա Նոյինն զԿայեն բերդ, ուստի հանին զԱւագն տէր երկրին. եւ Ջարմաղանն զԱնի եւ զԿարս եւ զմերձակայսն. Ղատաղա Նոյինն զկողմանս Ջարեքին, զԳետաբակուց եւ զՎարդանաշատու» (Պատմ. Վենետ. 1862, 144), որ սակայն Եղիջէի յիշած Վարդանաշատին հետ գործ չունի։ Եթէ հին մատենագիրներն այսքան ճղճիմ եղած են իրենց վկայութիւններով Վարդանաշատի մասին, գրեթէ նոյնքան ժլատ եղած են նորագոյն հետազօտողները։

Ինճիճեան (Ստոր. Հ. Հայաստանեայց, Վենետ. 1822, 538) պարզապէս յառաջ կը բերէ Եղիշէ վկայութիւնն առանց որեւէ մեկնութիւն մը տալու: Իսկ Ալիշան ոչ Այրարատի եւ ոչ ալ Շիրակի մէջ ակնարկութիւն մը ունի այս մասին: Հիւբշման (Հ. Հ. Տեղ. Անունները, Վիեննա 409) թէութեամբ մը կը հարցնէ՝ Այրարա՞տ նահանգի մէջ. երկրորդ մը «Գետաբակք»ի հետ յիշուած (Վարդան 144):

Այս խոպան գետինը կը փորձենք արօրադրել, յուսալով ձեռք բերել արդիւնաւէտ հունձք մը: Եղիշէի տեղիքը մեզ կը ստիպէ ամէն պարագայի՛ն Վարդանաշատը դնելու ընդ մէջ Դրասխանակերտի եւ Օշականի, ուրեմն աներկբայ Այրարատեան նահանգին մէջ: Արդ Դրասխանակերտի եւ Օշականի միջեւ կամ անոնց մերձաւոր կը ներկայանան երկու ամրոց, մին Բիւրական եւ միւսն Ամբերդ-Անբերդ: Առաջինի մասին գիտենք թէ Յովհ. Պատմաբանի ստացուածքն էր եւ ձեռակերտ ամրոցիկը՝ «Եւ դարձեալ չու յուղի անկեալ չոգաք մինչեւ ի ձեռակերտ ամրոցիկն իմ Բիւրական, զոր ստացեալն էր իմ գանձի գնոյ, ուր եւ չինեալ յարդարեալ իսկ էի եկեղեցի հաստահեղոյս կոփածոյ քարամբք պերճապաճոյճ պճնողութեամբ եւ նկարակերտ յօրինուածով, եւ վանս կուսակրօն միանձնացելոց զնա հաստատեալ» (Յովհ. Պատմ. Թիֆլիս 1912, էջ 336): Ուստի Բիւրական

իբրեւ փոքրիկ ամրոց եւ ձեռակերտ Յովհ. Կաթողիկոսին՝ Ժ. դարու գործ՝ կարելի չէ Վարդանաշատ ամուր բերդին հետ նոյնացնել: Որով կը մնայ Ամբերդ, որ իր հնութեամբ եւ ամուր դիրքով, ռազմագիտական կարեւորութեամբ եւ արժէքով հանդիտապատիւ կը հանդիսանայ Վարդանաշատի եւ ԺԱ. դարէն սկսեալ շատ յաճախ կը յիշատակուի հայ մատենագիրներէ: Այսպէս առաջին վկայութիւնն ունինք Մագիստրոսի մօտ. «Ընկալայ զգիր քո սրբազան վարդապետ. ունէր զայս պատճէն բանից, եթէ կարօտէի տեսանել զքեզ եւ եկի յԱմբերդ, առաքեալ ի մանկամիտ արքայէ» (Կոստանեանց, Գ. Մագիստրոսի Թղթերը, Ալեքսանդրապոլ 1910, էջ 64): Իսկ հետագայ մատենագիրներէ կը յեղյեղուի այս անունը կարեւորագոյն բերդերու կարգին: «Ի ՆԽԴ թուին մեռաւ Գագիկ, թուեալ զԹագաւորութիւնն երից որդւոց իւրոց, Յովհաննիսի, Աբասայ եւ Աշոտոյ: Զթագն տայ Յովհաննիսի եւ զԱնի եւ զՇիրակ. զսուրբ Գրիգոր Զօրոյն Աշոցաց, զԱ ն բ ե ր դ եւ զդաշտն Այրարատեան..» (Վարդան, Պատմ. էջ 92): Նոյն հեղինակը դարձեալ այլուր կը կրկնէ, «Ի ՈԽԵ թուին առին զԱնբերդ եւ ի ՈԽԶ թուին առին զԱնի» (Անդ, էջ 138.: Կիրակոս Գանձակեցի խօսելով Զաքարէի եւ Իւանէի մասին, կ՚ըսէ, «Սոքա բազում մարտս քաջութեան տային. քանզի զբազում աշխարհս Հայոց, զոր ունէին Պարսիկք եւ

*Տաճկունք՝ առին ի նոցանէ յինքեանս․ զգաւառն որ շուրջ զծովովն Գեղարքունւոյ, զՏաշիր եւ զԱյրարատ, զԲջնի քաղաք եւ զԴուին, եւ զԱնբերդ եւ զԱնի եւ զԿարս եւ զՎայոց ձորն»* (*Կիր․ Պատմ․ Վենետ․*, 1865, *էջ* 79)։

*Նոյն իշխաններու սերունդէն Մեծին Սարգսի մէկ արձանագրութեան մէջ՝ «Եւ ես* (*Աստուած*) *ի ձեռս մեր յառաջ զանառիկ զղեակն զԱնբերդ եւ Թագաւորանիստ քաղաքն Անի եւ ապա զամուրն Բջնի...»* (*Կոստանեանց, Վիմական Տարեգիր, Պետերբ․* 1913, *էջ* 141)։ *Իսկ Դաւրիժեցւոյն քով նոյնացուած է արդէն Արագածոտն գաւառին հետ․ «Այս Սարգիս եպիսկոպոս էր յաշխարհէն Արարատեան, ի գաւառէն Ամբերդոյ, որ է Արագածոտն»* (*Պատմ․ Վաղարշապատ*, 1896, *էջ* 249)։

*Այսքան նշանաւոր եւ կարեւոր բերդ մը, որ նոյն իսկ Արագածոտնի համազօր դրուած է, դժուարաւ կարելի է համարիլ թէ տասներորդ դարէ յառաջ անյիշատակ մնացած ըլլար հայ մատենագիրներէ։ Այն նկարագրութիւնը, զոր կու տան մեզի Շահխաթունեանց* (*Ստորագրութիւն Կաթող․ Էջմիածնի, Էջմիածին* 1842, *էջ* 70—71) *եւ Ալիշան* (*Արրտ․, Վենետ․* 1890, *էջ* 156) *Անբերդի հին աւերակներու մասին, կը հաստատէ թէ այդ ամրոցը շատ հին է, հետեւաբար այն*

*հնամենի գոյութիւն մը ունէր եւ յառաջ կը կրէր այլ անուն մը՝ ՎԱՐԴԱՆԱՇԱՏ։ Ինչպէս Դրասխանակերտ հնագոյն անունը տեղի տուած է յետնագոյն Աշտարակ անուան, այնպէս ալ Վարդանաշատ հետագային փոխանակուած է Ամբերդ–Անբերդով։*

## 4. ԲՈՂԲԵՐԴ

Հնագոյն հայ մատենագրութեան մէջ միայն Ղազար Փարպեցի գիտէ այս անունով ամրոց մը. «Իսկ Շապհոյ տարեալ զկանայս Կամսարականացն յամուր բերդն Բասենոյ, զոր Բողբերդն կոչեն, անդ թողոյր. եւ յանձն արարեալ Յըզատ Վշնասպայ բերդակալի զկանայս Կամսարականաց, պատուիրէր նմա զգուշութեամբ պահել ըստ օրինացն քրիստոնէից զնոսա, սրբութեամբ[1]»: Նոյն հեղինակն երկրորդ անգամ ալ կը յիշէ գրեթէ նոյն բառերով. Շապուհ Միհրանեան երբ արքունատուր հրամանով կը ստիպուի հեռանալ Հայաստանէն եւ մեկնիլ Պարսկաստան, «Բայց զկանայս Կամսարականացն թողեալ Շապհոյ անդէն ի Բողբերդի՝ յանձն առնէր բերդակալին, ստէպ պատուիրելով՝ բազում զգուշութեամբ պահել եւ առաւելապէս սրբութեամբ, ըստ օրինի քրիստոնէից կարգի[2]»: Որքան ալ հետագայ հայ մատենագիրներու մօտ չենք գտներ այս անունով բերդ մը, սակայն Ղազարէ հազիւ յիսուն տարի յետոյ օտար յոյն մատենագրէ մը՝ Պրոկոպիոսէն

---

[1] Ղազար փարպեցի, Պատմութիւն, Տփղիս 1904, էջ 146:

[2] Ղազար, Պատմ., էջ 157:

յաճախ յիշատակուած կը տեսնենք ամրոց մը Բող»։ Τότε καὶ Περσῶν χωρία ἐν Περσαρμενίοις Ῥωμαῖοι ἔσχον φρούριόν τε τὸ Βῶλον καὶ τὸ Φαράγγιον καλούμενον, ὅθεν δὴ τὸν χρυσὸν Πέρσαι ὀρύσσοντες βασιλεῖ φέρουσιν.[3] «Այն ժամանակ Հռոմայեցիները իրենց իշխանութեան տակ ունէին Պարսից Պարսկահայաստանի մասէն Բող ամրոցը եւ Փարանգիոն կոչուած վայրը, ուսկից պարսիկները ոսկի կը հանէին եւ իրենց արքային կը բերէին»։ Պրոկոպիոս երկու վայրերուն դիրքն ու տեղն աւելի ճշգրիտ կը սահմանէ հետեւեալ վկայութիւններով. Ὑπὸ δὲ τοὺς αὐτοὺς χρόνους Ναρσῆς τε καὶ Ἀράτιος, οἳ Βελισαρίῳ καὶ Σίττᾳ ἐν Περσαμενίων τῇ χώρᾳ κατ᾽ ἀρχὰς τοῦδε τοῦ πολέμου ἐς χεῖρας ἦλθον, ὥσπερ ἔμπροσθέν μοι δεδήλωται, ξὺν τῇ μητρὶ αὐτόμολοι ἐς Ῥομαίους ἧκον,.. ὅπερ ἐπειδὴ Ἰσαάκες, ὁ νεώτατος αὐτῶν ἀδελφὸς, ἔμαθε, Ῥομαίοις λάθρα ἐς λόγους ἐλθῶν Βῶλον ἄντοῖς τὸ φρούριον, ἄγχιστά πη ὂν τῶν Θεοδοσιουπόλεως ὁρίων, παρέδωκε.[4] «Երբ Բելիսար եւ Սիտտա Պարսկահայաստանի մէջ պատերազմ կը մղէին Պարսից դէմ, Ներսեհ եւ Հրահատ իրենց մօր հետ կ'անցնէին Հռոմայեցւոց կողմը...։ Իսկ անոնց կրտսեր եղբայրը Սահակ գաղտնի միաբանելով Հռոմներու հետ, անոնց կը յանձնէր Բող-

---

[3] Procopii De bello Persico, ed. J. Haury, Lipsiae 1903, I. 15, 18.

[4] Procop. I. 15, 31—32:

բերդը, որ մօտ էր Թէոդոսիուպոլսի սահմանին»: Փարանգիոնի դիրքը կը ճշդէ գրելով· Βόας ὁ ποταμὸς ἔξεισιν ἄγχιστά πη τῶν Τζανικῆς ὁρίων ἐν Ἀρμενίοις, οἶ δὴ ἀμφὶ τὸ Φαράγγιον ᾤκηνται[5]. «Վոհ գետը (Ճորոխ) սկիզբ կ'առնէ Ճանիկի սահմանին մերձ Փարանգիոնի մօտակայ այն վայրէն, ուր Հայերը կը բնակին»:

Այժմ ինքնին սա կարեւոր հարցը կը յառնէ, թէ ի՞նչ աղերս ունին իրարու հետ Բողբերդ եւ Բոլոն ամրոցը, եւ թէ ո՞ւր կը գտնուին անոնք:

Չամչեան[6] է որ առաջին անգամ այս երկու անունները կը նոյնացնէ· «Եւ յայնմ ժամանակի, յառաջ կը բերէ Պրոկոպի վկայութիւնը, առին Յոյնք յաշխարհին Պարսկահայոց զտեղիսն, որք էին ընդ տէրութեամբ Պարսից, զԲողբերդ (որ է յերկրին Բասենոյ յաշխարհին Մեծին Հայոց) եւ զՓառանգ կոչեցեալ (փոխանակ ասելոյ Փորակ) ուր են հանք ոսկւոյ...: Ահա ի սոսին յայտնի տեսանի, զի Պրոկոպիոս՝ Պարսկահայ ասելով իմանայ զմասն Մեծին Հայոց, եւ որոշակի զԲարձր Հայք մինչեւ յԱյրարատ, կամ զգաւառն Կարնոյ մինչեւ ի Բասէնք, եւ անդր եւս· ուր է ամրոցն կոչեցեալ Բողբերդ, զի

---

[5] Procop. II. 29, 14: Հմմտ. նոյնպէս յաջորդ տեղիքները, ուր կը յիշուին այդ երկու վայրերը· I. 15, 29· I. 22, 3, 18· II. 3, 1· 3, 7· VIII. 13, 19 (կամ De Bello Gothico, IV, 13, 19):

[6] Հ. Մ. Չամչեան, Պատմութիւն Հայոց, Վենետիկ 1785, Բ., էջ 517—518, հմմտ. նոյնպէս էջ 241:

զայս ամրոց նաեւ Ղազար Փարպեցին ի նմին տեղւոջ դնէ»: Ինճիճեան[7] պարզապէս յառաջ կը բերէ թէ Ղազարի եւ թէ Պրոկոպիոսի տեղիքներն առանց սակայն որեւէ մեկնութիւն մը տալու: Իսկ իր «Հնախօսութեան» մէջ խօսելով ոսկի հանքերու մասին, Բողոնը կը նոյնացնէ Բալուի հետ, իսկ Փարանգիոն Արկնիի. «Յետ սակաւուց յիշէ (Պրոկոպ) զբերդն Վօլու կամ Պօլու, զոր համարիմ լինել Բալու. արդ մօտ ի Բալու՝ էր Արկնի, որ էր ի Պաղնատուն գաւառի Չորրորդ Հայոց. եւ այժմ կոչի Արղնի նաեւ Արղանա: Զայն զայս անուն պարտ է համարել այլայլութեամբ կոչեցեալ ի Պրոկոպիոսէ Ֆարանղիոն, փոխանակ գրելոյ Ֆարղանիոն, որով առաւել մերձենայր յուղիղն. զի որպէս ի Ֆարանղիոնն, նոյնպէս յԱրղանա են մինչեւ ցայժմ հանք ոսկւոյ[8]»:

Ալիշան[9] միայն կը յիշատակէ Բողբերդն իբր «Անծանօթացեալ դերիք եւ անուամբ որ ի սոյն յայս կողմանս թուի լինել. այն է Բողբերդ, զոր ամուր բերդ Բասենոյ կոչէ Ղազար Փարպեցի. քանզի զօրավարն Պարսից Շապուհ ի չուել գնալն ի Դու գեղջէ յՈքաղ (Թորթում), զկանայս Կամսարական իշխանացն Ներսեհի եւ Հրահատայ՝ եթող յայսմ

---

[7] Հ. Ղ. Ինճիճեան, *Ստորագրութիւն Հին Հայաստանեայց*, Վենետիկ 1822, էջ 386, 513:

[8] Հ. Ղ. Ինճիճեան, *Հնախօսութիւն Հայաստանեայց*, հատ. Ա., Վենետիկ 1835, էջ 189:

[9] Հ. Ղ. Ալիշան, *Այրարատ, Բնաշխարհ Հայաստանեայց*, Վենետիկ 1890, էջ 18:

բերդի, — այս. ընդ մէջ Դուի եւ սահմանակցութեան Կարնոյ եւ Թորթումայ, ի լանջս լերանց որ հայլին ի դաշտն Բասենոյ՝ ի դէպ է խնդրել զբերդդ: Էին էին արդեօք եւ այլ բերդորայք առ նոքօք, քանզի դաշտագետին գոլով միջոց գաւառին՝ հարկ էր յեզերական լերինս կայկայել զամրոցսն»:

Էփրիկեան[10] կու տայ հետեւեալ տեղեկութիւնը. «Բողբերդ — Հին ամուր բերդ հաւանօրէն Այրարատայ Բասեն գաւառին մէջ, որոյ դիրքն անյայտ է: Իսկ ՙԲոլոն, ի համար ունի. Բոլոն ամրոց — Պրոկոպիոս կը յիշէ ամրոցս Թէոդոսուպոլսի մօտ»:

Հիւբշման[11] կը յիշատակէ Փարպեցւոյ տեղիքը «Բողբերդ ամրոցը Բասեան գ.ին մէջ. Բող + բերդ»: Անդրադոյն ծանօթութիւն մը կամ համեմատութիւն մը չունի:

Կոզեան[12] Պրոկոպիոսի Բոլոնը կը համարի նոյն Բողբերդի հետ Բասեն գաւառի մէջ, սակայն տեղադրութեան մասին յատուկ անդրադարձում մը չունի:

Առաջին անգամ Ադոնց[13] է որ կը փորձէ Բող — Բողբերդի դիրքն ու տեղը որոշել: «Իբրեւ հակակշիռ հռոմէական Թէոդոսիուպոլ

---

[10] Հ. Ս. Էփրիկեան, Բնաշխարհիկ Բառարան, Վենետիկ 1903, էջ 428 եւ 430:

[11] Հ. Հիւբշման, Հին Հայոց Տեղւոյ Անունները: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: Վիեննա 1908, էջ 326:

[12] Հ. Ս. Կոզեան, Կամսարականները, Ա. Մ. ծժ., Վիեննա 1926, էջ 36, 37, 111, 120:

[13] Н. Адонц. Арменія в Эпоху Юстиниана Հայաստան Յուստինիանու Դարուն), Պետերբուրգ 1908, էջ 24—25:

ամրոցին պարսկական հողին վրայ կը գըտնուէր Բոլ, Բողբերդ, Բասեն գաւառի մէջ, ոչ հեռու Թէոդոսիուպոլսէն: Այստեղ արգելափակուած էին Կամսարական իշխաններու կիները, գերի բռնուած Պարսից կողմէ Վահան Մամիկոնեանի օրով: Բողբերդը ծանօթ էր արեւմտեան պատմիչին եւ Զ. դարու քաղաքական դէպքերուն մէջ ահագին դեր է խաղացած: Անոր տեղը ճշդիւ յայտնի չէ, մէկ վկայութեան նայելով՝ նա կը գտնուէր Բասենի մէջ, իսկ միւս վկայութեան համեմատ Թէոդոսիուպոլսի սահմաններուն մօտ: Սովորաբար զայն այժմեան Հասան-Կալայի հետ կը նոյնացնեն: Սակայն այդտեղ կը գտնուէր Վաղարշակերտը, ուր Ներսէս Շինող կաթողիկոս կառուցած էր Ս. Աստուածածնի եկեղեցին: Նուազ հաւանական է որ նախկին Բողբերդը հետագային Վաղարշակերտ անուանուած ըլլայ, որովհետեւ վերջին յորջորջումս ըստ էութեան չէ կարող յետնագոյն ծնունդ մը լինել, գուցէ համարելու է որ Անաստաս կայսեր կողմէ ամրացուած Թէոդոսիուպոլիս ամրոցին դէմ Պարսից թագաւորը Վաղարշ (կամ Վաղաշ 484—488) վերանորոգած ըլլայ Բողբերդն եւ վերանուանած Վաղարշակերտ, Վաղարշի քաղաք:

«Մեզի աւելի հաւանական կը թուի Բողը փնտռել Տայոց նահանգի Բուխայի սահմաններուն մօտ, անոնց անուններուն նմանահնչութիւնը նկատի ունենալով: Բուխա կը գրուէր Օլթի գետին բազուկներէն միոյն

ակնաղբիւրի շրջանը՝ սահմանակից Բասենին: Կարգաբազար լեռներու մէջ, երկու գաւառներու միջեւ կը գտնուի այժմ Բուակալայ բերդը: Եթէ Բուա–ծագած է Բուխաէն, ապա Բուա–կալայի մէջ ունինք հին Բողը»:

Ադոնցի այս նոյնացման դէմ կ'ելլէ գրեթէ քսան տարի յետոյ Ա. Խաչատրեան[14], որ առաջ բերելով այն հատածը, զոր մենք վերը տուինք, կ'ընդդիմաբանէ այսպէս. «Ադոնցի հատուածի համար պիտի խօսի մեր ամբողջ ուսումնասիրութիւնը. ուստի այստեղ նկատի ենք առնում միայն անունների ստուգաբանութեան եւ տեղերի մերձեցումների մասին ասածները: Այսպէս անհիմն ենք համարում Բոլ = Բող եւ Բուխա ու Բուա անունների նոյնացումը. հնչախօսական ոչ մի բացատրութիւն չի տալիս հեղինակը, մանաւանդ երբ տեղով էլ, ինչպէս պիտի տեսնենք, այնքան իրարից հեռու են գտնւում, ուստի իր ասածն աւելի մի արժէք չի ներկայացնում քան Ինճիճեանի Փառանդիոնի ու Ցարդանոնի–Արղանայի մերձեցումը: Բացի սրանից Ղազար Փարպեցին որոշ կերպով ասում է, թէ Բող բերդը գտնւում է Բասենում, մինչդեռ Բուխա Տայքի մէկ գաւառն է: Դարձեալ Պրոկոպ Բող եւ Փառանդիոն միշտ անբաժան

[14] Ա. Խաչատրեան, Ցոյն Պատմիչների Տեղեկութիւնները Հին Հայաստանի Ոսկեհանքերի մասին. Հայաստանի Ս. Խ. Պ. Համալսարանի Գիտական Տեղեկագիր, Թ. 1, Երեւան 1925, էջ 49—69:

յիշում է եւ որոշակի ասում, թէ ոսկեհանքը
գտնւում էր նրանց մօտ. իսկ Աղոնց ոսկե-
հանքը դնում է Սպերի մօտ, ուստի չէր կա-
րող Բասենի սահմանների վրայ գտնուել:
Եթէ մինչեւ իսկ Բող - Բուխա եւ Բուա նոյն
բառերն էլ լինեն, տեղերի հեռաւորութեան
եւ տեղագրական ուրիշ պայմաններ անկա-
րելի են դարձնում Փառանգիոնի հետ յի-
շուած Բոլ նոյնացնել Բուխա-Բուա-ի հետ
եւ մինչեւ իսկ Փարպեցու յիշած Բող բերդի
հետ» (էջ 56): Ապա Պրոկոպի վերոյիշեալ Բո-
լոն եւ Փարանգիոն վայրերու մասին տուած
ծանօթութիւնները ըստ անգլերէն թարգ-
մանութեան առաջ բերելով եւ նկատի ունե-
նենալով Փարպեցու տեղիքը՝ Եւ երթեալ
յՈքաղն (Հազարաւուխտ) բանակէր մօտ ի
գիւղն, որում անուն էր միումն Գիւղիկ եւ
միւսումն Վարդաշէն (Պատմ. 145), կ՚եզրա-
կացնէ. «Այժմ արդէն ճշդուած է, թէ Ոքաղ՝
Տայքի գաւառներից մին, գտնւում էր Թոր-
թում գետի վերին հոսանքի եւ ակնաղբիւրի
շրջանում՝ Գեաւուր Դաղի լեռնակոյտի հիւ-
սիսային զառիվայրերից սկսած մինչեւ Վխիկ
վտակի բերանը եւ իր տարածութեան մէջ
ունի ներկայ Նիխախ, Թորթումի բերդը,
Սաղեր, Ջինաւոր, Կարսիկ, Խոսպրիկ, Նոր-
շէն, Վարդաշէն... եւն գիւղերը...: Այս
տեղագրական նկարագրութիւնից հետեւում
է թէ Փառանգիոն եւ Բոլ կամ Բող-ոն բեր-
դերը պէտք է փնտռել Թորթում գետի աւա-
զանի արեւմտեան կողմի Ջրաբաշի՝ Մեղրա-

րուն եւ Հարկեւոր լեռներում, Ճորոխ գետի ակնաղբիւրի շրջանից ոչ հեռու: Ճորոխ իր սկիզբն է առնում Ղազան-Բաշի լեռների արեւմտեան ծործորներից ոչ հեռու Կարա-Ղայա գիւղից, այս լերան արեւելեան կողմից քամւում է Վխիկ վտակը՝ Թորթում գետի ձախ կողմի բազուկներից մէկը. ուստի Փա-ռանդիոն եւ Բոլոն զոյգ բերդերը պէտք է գտնուէին Վխիկ վտակի աւազանի՝ հաւա-նաբար վերին կողմերը՝ ներկայ Խախու եւ Վխիկ գիւղերի շրջաններում, որը եւ հեռու չէ Թէոդոսիոպոլի (=Կարինի) սահմաննե-րից» (էջ 63): Իսկ անդ ծան. 12 կ՚աւելցնէ, «Պրոկոպի Բոլ-ոն = Բող-ոն անունը, նոյն ինքն Փարպեցու յիշած Բողն է որի վերջաւո-րութիւնը յունական մի յաւելուած է: Փար-պեցին Բող բերդը դնում է Բասենում (Պատմ. 147): Մինչդեռ Պրոկոպի տուած տեղեկու-թիւններից յայտնի է, ինչպէս տեսանք թէ Տայքում պէտք է լինի եւ ոչ թէ Բասենում: Պէտք է աւելացնել նաեւ թէ Բասենումն էլ յայտնի չէ Բող բերդի տեղը...: Արդեօք Փարպեցի՞ն սխալւում է դնելով Բող բերդը Բասենում, թէ նոյն անունով երկու բերդեր կային մին Տայքում, միւսը՝ Բասենում. ինչ-պէս կային երկու Արծաթի, մին Կարնի դաշտի հիւսիսային արեւելեան կողմը, իսկ միւսը՝ Արծաթ-Աղբերք Բասենում Դու գիւղի մօտ»:

Վերջապէս Պրոկոպի յիշած խաղողով եւ բազմատեսակ պտուղներով հարուստ խորա-

ձորը՝ Յակոբ Կարնեցու[15] վկայութեան համեմատ գտնելով. «Եւ անտի (Բաբերդէ) հասանէ ի ձորն մեծ եւ անհուն, որ ունի դղեակ մի պարսպաւոր շինեալ ի վերայ Ճորոխ գետոյն, որ այժմ Ըսպիր ասեն. եւ է սա պարոնանիստ, եւ ունի գիւղս եւ մազրայս ԳԾ. եւ մայրիս յոլով. է եւ ձորն այգիք անթիւ եւ ծառոց պտուղք յոլով հոտով եւ համով... լինի իւղ եւ մեղր անթիւ. եւ բնակիչք երկրին բովանդակ Հայք. որ գնացեալ հասանէ մինչեւ ի գիւղն Խոտեւջուր». Հետեւեալ եզրակացութեան կը յանգի Խաչատրեան. Թէ «Փառանգիոն եւ Բողոն բերդերը մօտ էին Սպերին: Արդեօք կարելի՞ է Վլիկ գետահովտում այժմ գոյութիւն ունեցող Բարդողոս եւ Բուլուլ (ըստ Հ. Սարգսեանի քարտէզին) գիւղերի անուններում վերագտնել մեզ հետաքրքրող բերդերի անունները: Տեղին վրայ կատարուելիք մի ուսումնասիրութիւն պիտի տայ այս հարցին գոհացուցիչ պատասխանը» (էջ 63—64):

Ադոնց քանի տակաւին կենդանի էր չէր կարող Խաչատրեանի Յօդուածն անպատասխանի թողնել, որովհետեւ, ինչպէս ընդարձակ յառաջբերութիւնէն դիւրաւ կը տեսնուի, Խաչատրեանի գրութեան մէջ շատ աւելի խախուտ եւ տկար կէտեր գոյութիւն ունին քան Ադոնցի: Եւ այդ թերի կողմերը դժուարաւ թէ Ադոնցի ուշադրութիւնէն վրիպէին:

---

15 Յակոբ Կարնեցի, Տեղագիր Վերին Հայոց. հրտ. Կոստանեանց, Վաղարշապատ 1903. էջ 16:

Նա ընդարձակ Յօդուածով[16] մը կը քրքրէ իր քննադատին գրութիւնը մի առ մի մատնանիշ ընելով անոր տկար հիմերն ու սխալ հասկացողութիւնները. «Պրոկոպ յոյն պատմիչը յիշում է, կը գրէ Ադոնց, երկու աշխարհագրական կէտեր Βῶλον, որ միշտ կոչում է φρούριον բերդ եւ Φαράγγιον, որ երբեք չի կոչում բերդ: Առաջինի այսինքն Բոլոնի համար ասում է, որ գտնւում է Թէոդոսուպոլսի (որ է Կարին = Էրզրում) սահմանների մօտիկ: Իսկ Փարանգիոն այն տեղն է, ուր կար ոսկեհանք, եւ շատ մօտ էր Վոհ կամ Ճորոխ գետի ակունքին:

«Բոլոն բերդը ծանօթ է հայ մատենագրութեան: Սա այն բերդն է որ Փարպեցին կոչում է Բողբերդ եւ դնում է Բասենում: Բասենը Կարինի թիկունքն է, եւ ուրեմն Պրոկոպ իրաւունք ունէր ասելու, որ Բոլոն բերդը Կարինի սահմաններին մօտ էր: Փարանգիոնը անծանօթ է մեր մատենագրութեան, բայց Պրոկոպի այն ցուցումից, որ գտնւում է Ճորոխի ակնքում, եւ որ յայտնի էր ոսկեհանքով, պարզ հետեւում է, որ խօսքը Սպերի շրջակայքում գտնուած ոսկեհանքի մասին է, որովհետեւ Ճորոխի ակունքը իրօք գտնւում է Սպերի առջեւ բարձրացող լեռների մէջ: Նոյն տեղն է Փարանգիոնը, ինչ որ Ստրաբոնի Կաբալլան:

---

[16] Ն. Ադոնց, *Հայաստանի Ոսկեհանքը*. Հայրենիք Ամսագիր, *Բոստոն* 1928 (Զ. *տարի*), Թ. 4, էջ 86—95:

«Լոյսի պէս պարզ է: Եւ այս ճշմարտութեան դէմ է ելնում Պ. Խաչատրեան, առարկում է, հակասութիւններ է գտնում մեր խօսքերի մէջ, առանց նկատելու, որ հակասութեան աղբիւրն ինքն է, իր հիմնովին սխալ հասկացողութիւնը, որով պատմիչի յիշած երկու տեղերը ձուլում է, կարծելով որ նրանք գտնւում են միեւնոյն տեղ իրար կից: Այս պատճառով էլ Փարանդիոնին է վերագրում, ինչ որ պատմիչն ասում է Բոլոնի մասին, եւ ընդհակառակը Բոլոնին է տալիս, ինչ որ վերաբերում է Փարանդիոնին» (անդ էջ 87):

Նոյնպէս իրաւամբ անհեթեթ կը համարի Խաչատրեանի այն ենթադրութիւնը, թէ Փարանդիոն եւ Բոլոն կարելի է նոյնացնել Բարդողոս եւ Բուլուլ տեղանուններու հետ: «Պրոկոպիոս ասում է, որ Փարանդիոն Ճորոխի ակունքումն է, բայց Խաչատրեան ուզում է, որ Վխիկ գետահովտում լինի: Փարպեցին ասում է, որ Բողբերդը գտնւում է Բասենում, Խաչատրեանը փոխադրում է բերդը Վխիկ գետի ափը: Եւ ի՞նչ պատասխանում Փարպեցուն: Արդեօք Փարպեցի՞ն սխալւում է Բողբերդը դնելով Բասենում, խորհում է Պ. Խաչատրեան, թէ նոյն անունով երկու բերդ կար Տայքում եւ Բասենում»: Ոսկեհանքի մը գոյութիւնը կամ տեղագրական յարմարութիւն մը չկայ մէջտեղ, «Լոկ լեզուագիտական հաշիւներն են որ բերել են նրան Բարդողոս եւ Բուլուլ գիւղերի մօտ.

սրանց անուններում ուզում է վերագտնել Փարանգիոն եւ Բող բերդերի յիշատակը: Արդ, ի՞նչ խալիֆայական լեզուագիտութիւն է հարկաւոր, որ նմանութիւն տեսնէ այս եւ Փարանգիոն ու Բող անունների մէջ» (էջ 89—90):

Ադոնց, որ Բողբերդը կ՚առաջարկէր Բուա-կալայի, հին Բուհա-Բուխա բերդին հետ նոյնացնել, յեցած ճիշդ Խաչատրեանի նման լեզուագիտական հիմքերու վրայ, այժմ իր ընդդիմաբանին առարկութիւններէն բռնադատուած կը խոստովանի մէկ կողմէ՝ ըսելով. «Բողբերդի անունը չէ պահուել եւ տեղն անյայտ է: Մասնաւոր հետազօտում տեղի վրայ մի օր թերեւս վեր հանի արձանագրութեան կամ մի այլ նշանի միջոցով հինաւուրց բերդի հետքերը: Առ այժմ միայն ենթադրութիւններ կարող են լինել: Ներկայումս Բասենի նշանաւոր բերդն է Հասան-Կալէ: Հին Բողբերդը թւում է որ մի տեսակ հակակշիռ էր Պարսից հողի վրայ ընդդէմ Բիւզանդական Կարինի: Ուստի հաւանական է, որ նա գտնւում էր Հասան-Կալէի տեղը եւ ունէր այն ռազմագիտական նշանակութիւնը, որ փակում էր գլխաւոր ուղին, որ գնում էր Կարինից դէպի Պարսկահայաստանի միջնաշխարհը, Այրարատեան դաշտը» (անդ էջ 92—93):

Միւս կողմէ կրկին կը ջանայ հաւանական գործել, թէ Բողբերդը կարող է Բուխա, Բուհա-, Բուա-կալէի հետ նոյն լինել: «Մի

քանի դիտողութիւններ դրդել էին մեզ ընդունել, որ Հասան-Կալէի տեղը եղել է Վաղարշակերտ անունով մի քաղաք: Այսպէս կարծելով մենք փորձել էինք որոնել Բողբերդը ոչ Բասենի դաշտում, այլ այն լեռների մէջ, որ պատում են Բասենը հիւսիսից եւ զատում նրան Բուխա գաւառից» (էջ 93): «Ձեռագիրներից յայտնի է եւ Բոխա ընթերցումը: Բոխա-բերդը կարող է յանգիլ Բողբերդի ինչպէս որ բախտ՝ դառնում է բաղդ, եւ ընդհակառակն Օլթի, ուրեմն Ուղթի փոխւում է Ուխտիք կամ Ուխթիք ձեւերի..: Լեզուական նկատումներն չեն, որ մեզ դրդել են Բողբերդը որոնել Բասենի լեռներում, այլ որ այս լեռները տիրելով ամբողջ դաշտին հանդիսանում են բնական ամրութիւն: Բող կարող է կապ ունենալ Բուա-Կալայի հետ, կարող է պարսկերէն բոլ բառը լինել, որ նշանակում է բարձր, հին բարզ, հայերէն բարձր, որի բոլ ձեւը միացած է բոլանդ 'բարձր, բառի մէջ: Ուրեմն Բողբերդ ոչ այլ ինչ է եթէ ոչ 'Բարձր բերդ,: Կարեւոր է տեղագրութիւնն ամենից առաջ» (էջ 94): Այս ստուգաբանական մեկնութիւնը սխալ է, ինչպէս յետոյ պիտի տեսնենք:

Այս պատմական հարեւանցի ակնարկէն ինչպէս կը տեսնուի, Բողբերդի տեղագրութիւնը տակաւին իր վերջնական ճշդումը չէ գտած: Որքան ալ Ադոնց կը հաւաստէ, թէ Բողբերդ սովորաբար Հասան-կալէի հետ կը նոյնացնեն, սակայն մինչեւ այժմ ոչ մի հե-

գինակի մօտ հանդիպեցանք նման հաւաստիքի մը: Հետեւաբար պարզ ձրի վճիռ մըն է այդ: Բացի Խաչատրեանէ, ու հասարակ բոլոր հեղինակները կ՚ընդունին, թէ Բողբերդ կը գտնուի Բասենի մէջ, բայց թէ ո՞ւր, կը մնայ անորոշ: Աղոնց իր վերջին Յօդուածին մէջ տակաւ տակաւ մերձեցած է այն ճշմարտութեան, թէ Հասան-կալէ եւ Բողբերդ հաւանաբար նոյն լինին, սակայն միւս կողմէ մերձաւոր Տայոց աշխարհի արդի Բուա-կալէ, հին Բուխա տեղանունը իր արտաքին խաբուսիկ տարազով զինքը մոլորեցուցած է, որով ի վիճակի չէ եղած հաստատուն վճիռ մը արձակել:

Եթէ պահ մը ակնարկ մը նետենք Կիպերտի[17] «Փոքր Ասիա, թերթ Զ. Կարին» ընդարձակ քարտէսին վրայ, իսկոյն կը տեսնենք Կարնոյ արեւելեան կողմը՝ Դեւէ Բոյուն լեռնէն մինչեւ Կալեսու եւ Երասխ գետերու միացման կէտը դալարագեղ ընդարձակ դաշտ մը, որ այսօր ալ իր վաղեմի անունը կը կրէ, Բասեն: Շուրջանակի բարձրաբերձ լեռներէ օղակուած այս լեռնահովիտին մէջէն կ՚անցնի Տրապիզոն-Բայազիդ-Թաւրիզ տարանցիկ ճանապարհը: Դաշտին միջավայրին հիւսիսային եզրին վրայ կը բարձրանայ Հասան-կալէ՝ հին Ծիրանի լեռը, որուն հարաւ-արեւմտեան ծայրագոյն մէկ բարձաւանդակին վրայ կառուցուած է Հասան-կալէ հնամենի բերդը եւ

[17] Richard Kiepert, Karte von Kleinasien, Berlin 1913, B. VI. Erzerum.

Ներքեւը համանուն քաղաքը եւ քիչ հեռուն կը գտնուին պատմական նշանաւոր ջերմուկները։ Քարաբլուրին քղանցը կը քերէ Կալեսուն՝ հին Մուրց գետը։ Իսկ բերդին տեղւոյն եւ դիրքին մասին ունինք մանրամասն նկարագրութիւններ Ալիշանի[18] եւ Սարգիսեանի[19] մօտ։ «Բերդն բոլորաձեւ ի կրային տոփաքար բլրի 1700 վերագոյն կալով (Կոխի[20] համեմատ հազիւ 300—400 ոտք բարձրութիւն ունի դաշտի երեսէն) կարկառի ի քաղաքն Հս. եւ Հս. Մ. իբր 3000 Զ. (մետր) շրջանակաւ, ոչ աներկեւան կացուցանէ զայն ի ամրակոծութենէ. այն զի եւ ի հիւսիսոյ կողմանէ բարձրագոյն քարաժայռք ի վերայ հային...։ Կրկնապարիսպ է բերդն ժայռաձեւ աշտարակօք, անհաւասար քառակողմն, 300 չափ յերկայնութիւն եւ երիր մասամբ ի լայնութիւն. պարսպապատ է եւ քաղաքն իսկ, վասն որոյ եւ եռապարիսպ համարի Հասանգալէ, եւ այնպէս անուանեաց Նիւպըրի[21], հին ուղեւոր Անգղիացի, որ յամի 1581 էանց ընդ այն։ ...Ի կատար լերին ջրամբարք են հանդերձ քարակտուր ստորերկրեայ ճանապարհաւ որ իջուցանէ ի գետեզրն»։ Իսկ Սարգիսեան հմայուած Հասանկալէի տեսարանէն

---

18 Ալիշան, *Այրարատ*, 19—20։

19 Հ. Ն. Սարգիսեան, *Տեղագրութիւնք ի Փոքր եւ ի Մեծ Հայս*, Վենետիկ 1864, էջ 100—101։

20 Karl Koch, Reise im Pontischen Gebirge und Türkischen Armenien, Weimar 1846, II. էջ 324.

21 Յ. Յակոբեան, *Ուղեգրութիւններ*, հատ. Ա, ԺԴ.—ԺԶ., Երեւան 1932 (*Ուղեգրութիւն Ջոն Նիւբըրի*, էջ 448—460), էջ 456։

կը գոչէ. «Զիք ուրեք յայսոսիկ կողմանս գեղեցկագոյն վայր քան զսա. մինչչեւ ելեալ ի միջոց անդր բերդին, տեսարան ընդարձակածաւալ դաշտին Բասենոյ հիացուցանէ զաչս. իսկ եթէ ի ներքնաբերդ անդր մտանիցէ ոք հասեալ մինչեւ ցծայր շինուածոյն ի վերայ անդնդախոր քարափանն կառուցելոյ՝ յափշտակեալ յիմարին միտք ընդ ահեղ եւ վսեմ բարձրութիւն եւ ընդ անօրինակ ընդարձակութիւնն, յոր ձգտի տեսութիւնն. զի ոչ համօրէն Վերին Բասեն միայն առաջի նորա նկարի իբրեւ ի հայելւոջ, այլ մասամբ եւ Սասունն. ի հանդիպոյ ի բազում հեռաստանէ ափափոյք լերանց Թէքմանայ, եւ ի դաշտին գետն Մուրց եւ Երասխ մանուածաւալ ընթացիւք պտոյտքեալ» (անդ, էջ 101):

Բերդին հնութեան մասին կը շատանանք մէկ երկու ուղեգիրներու վկայութիւններն առաջ բերելով: Համբաւաւոր հայագէտ Լէման-Հաուպտ[22] կ՚ընձեռէ մեզի հետեւեալ տեղեկութիւնը. «Հասանկալէ ինքնին ունի յատուկ ռազմագիտական դիրք մը, որ յետնագոյն շրջանին միայն Խալտիներէն ճանչուած եւ օգտագործուած է: ... Բազմաթիւ զարաւանդներով օժտուած, բազմապիսի փոփոխութիւններու ենթարկուած այս միջնադարեան գենուական ամրոցը, որ իր նկարագեղ դիրքով կարող է մրցիլ Բաբերդի եւ Խարբերդի հետ, ունի կարեւոր հետքեր

---

[22] C. F. Lehmann-Haupt Armenien, Einst und Jetzt, II². Berlin 1931, էջ 731—733.

հնագոյն խաղտական շինութիւններու: Ճիշդ ամրոցին բակին մէջ կանգուն կը կենայ անարի սեւաթոյր վէմ մը, որ ուրիշ բան չէ, բայց եթէ պատուանդան մը խաղտական հսկայ կոթողի մը, ինչպէս է օրինակ՝ Թոփդաւէի եւ Քէշիշգէօլի Ռուսասի կոթողինը: ...Բասինսուի կողմը՝ ժայռը, որուն վրայ կառուցուած է ամրոցը, սեպաձեւ կը ձգուի ներքեւ: Այս սեպաձեւ զառիթափին վրայ կան վիմափոր սենեակներ, գործ խաղտական արուեստի, որոնք շատ վտանգաւոր ճանապարհներով միայն մատչելի են, եւ որոնց նմանը կարելի է նշմարել Վանի քարաժայռին վրայ Արգիշտեան սենեակներու ներքեւ» (էջ 731—733):

Ս. Տէր-Աւետիսեան[23]՝ Հասանկալէի հին դամբաններու ուսումնասիրութեան նուիրուած գրութիւնը կը վերջացնէ հետեւեալ ուշագրաւ եզրակացութեամբ. «Հասան-Ղալայի կուրգանները կասկած չեն թողնում, որ երրորդ կամ երկրորդ դարում Քրիստոսից առաջ հելլենական կենցաղը տարածուած էր Հայաստանի իշխող բարձր շրջաններում: Ի հարկէ, այդ ազդեցութիւնն աւելի զօրեղ պիտի լինէր հին մեծ կենտրոններում, որոնցից մէկն ես այժմ համարում եմ Հասան-Ղալան, թէեւ նա մինչեւ այժմ մեր պատմութեան մէջ ոչ մի դեր չի խաղացել: Ես այդ

---

23 Սմբատ Տէր-Աւետիսեան, *Հասան-Ղալայի Կուրգանները*. Նոր Աշխարհ Ամսագիր, *Թ*. 1, *Թիֆլիս* 1922, *էջ* 99—108:

բացատրում եմ ուսումնասիրութեան բացակայութեամբ եւ նրանով նոյնպէս, որ մենք միշտ առաջնորդւում ենք միմիայն գրաւոր աղբիւրներով, մի կողմ թողնելով մեր երկրի շատ հարուստ կուլտուրական-պատմական յիշատակարանները:

«Հասան-Ղալան իր անօրինակ ջերմուկներով ամենահին ժամանակներից գրաւել է անշուշտ այդ երկրի տէրերի ուշադրութիւնը եւ դարձել բնակավայր: Այդ են ցոյց տալիս Հասան-Ղալայի հնութիւնները: Բերդը եւ նրան կից գերեզմանատունը, ուր յաջորդաբար մենք նկատում ենք պատմական բոլոր շերտաւորութիւնները — Խալդական (սեպագրեր), յետ-խալդական, յոյն-հելլենական (Կուրգանները), նախաքրիստոնէական, քրիստոնէական եւ վերջապէս մահմեդական տիրողների հետքերը: Շատ հաւանական է, որ Հասան-Ղալայի պէս մի կենտրոնական բնակավայր, որի միջով Քրիստոսից չորս դար առաջ անցաւ Քսենոֆոնի յունական բանակը՝ իր նահանջի ժամանակ, անմասն չմնաց նաեւ այն ժամանակ, երբ երրորդ դարում հելլենասիրութիւնը եւ նրա հետ կապուած յունական գեղարուեստը նորոգ նուաճումներ էին անում Փոքր Ասիայում եւ նրան կից երկրներում, որոնցից մէկն է եղել Հայաստանը» (անդ. էջ 108):

Ռազմագիտական դիրք, հիանալի տեսարանով օժտուած վայր, հնախօսական յիշատակարաններով հարուստ տեղ եւ վաղեմի

հնութեամբ հոյակապ բերդ մը աչքի առջեւ ունենալ եւ համարել թէ հայ մատենագրութեան մէջ ոչ մի հետք ձգած ըլլայ, շատ զարմանալի եւ տարօրինակ իսկ պիտի թուէր: Եթէ ԺԶ. դարէն սկսեալ մինչեւ այսօր Հասան-Կալէ անունով շարունակ յեղյեղուած եւ յիշատակուած է այդ վայրը. բնականաբար չէր կարող նա անյիշատակ մնացած ըլլալ այդ դարէն առաջ եւ ոչ մի դեր խաղացած չլինել հնագոյն շրջանին, միեւնոյն հանգամանքին շնորհիւ: Նա հնագոյն դարերէն ի վեր միշտ կարեւոր հանգրուանը կազմած է Տրապիզոն—Կարին—Բայազիդ—Խոյ տարանցիկ եւ ռազմագիտական ուղեգծին վրայ, ուսկից կ'երթեւեկէին ապրանքատար կարաւաններ, ուսկից կը շարժէին բանակներ անդրէնածին կամ թշնամի դէպի հայկական ներքնաշխարհը եւ կամ հակառակ ուղղութեամբ դէպի Բարձր Հայք եւ Պոնտական ծով: Աւանն ու բերդը շարունակ թշնամի յարձակումներու թիրախ են ծառայած եւ յաճախ անշուշտ վնասուած եւ այրացաւեր դարձած, եւ սակայն կրկին փիւնիկ հաւի նման վերակենդանացած ու կառուցուած եւ նոր յորձորձումով պատմութեան անցած:

Ի՞նչ էր իր հնագոյն անունը:

Յակոբ Կարնեցի (Տեղագիր, էջ 19) գրէ՝ «Երկիրն Վերին Բասենոյ... ունի մեծ բերդ պարսպաւոր ի վերայ վիմի հաստատեալ, որ հայ բարբառով կոչեն այժմ Դո-

րոնք, եւ Թուրք բարբառով Հասան-Ղալա կոչի»:

Զաքարիա Սարկաւագ կ՚անուանէ «գաւառայն Դարունոյ՝ որ է Հասան-Ղալայ» (Պատմ. Վաղարշապատ, 1870, Բ. Ժ., էջ 16):

Ինճիճեան կը նոյնացնէ Յուստինիանուպոլի հետ. «Առ Պրոկոպիոսի (Շին. Գ. 5) կոչի Վիզանի Βιζανά կամ լատին հնչմամբ Պիզանէ (Ստոր., էջ 381): Յայս բան ցուցանէ Պրոկոպիոս, թէ Վիզանէ կամ Բասեան՝ էր գաւառ եւ միանգամայն քաղաք... Առ մեզ չիք յիշատակ Բասեն անուն քաղաքի, այլ միայն գաւառի. իսկ մերձաւոր առ անունս Ծումինա յիշատակեալ ի Պրոկոպիոսէ, գտանեմք առ նախնիս մեր զանուն Աւկոմի կամ Օկոմի, առ որ մօտ այժմեան Հասան-Ղալա, դրիւք զառիթափի, եւ օդով առողջ, որպէս նշանակէ Պրոկոպիոս վասն Յուստինիանուպոլսոյ» (անդ էջ 382):

Բասեան պարսկական տիրապետութեան տակ կը գտնուէր, մինչ Յուստինիանուպոլիս կամ Բագանիս-Բիզանիս հռոմէական էր եւ կը գտնուէր Եկեղեաց գաւառին մէջ[24]: Հոնիգմանի համեմատ Բիզանիս է նոյն արդի Վիջանի հետ ի Դերջան, որմէ 3 մղոն հեռու կը գտնուէր Յուստինիանա կամ Ծումինա[25]:

Համմէր կը կարծէ թէ «Հասան-Կալէն

---

[24] Հ. Յ. Տաշեան, Հին Հայաստանի Արեւմտեան Սահմանը. Հանդէս Ամսօրեայ, Վիեննա 1944, էջ 5—7:

[25] Ernst Honigmann, Die Ostgrenze des Byzantinischen Reiches, Bruxelles 1935, էջ 19.

հին Թէոդոսիոպոլիսն ըլլայ[26], որովհետեւ այնտեղ ալ ջերմուկներ կը գտնուին»: Թէոդոսիոպոլիս = Կարին այնքան ստոյգ իրողութիւն մըն է, որ այսօր ոչ ոք այլեւս Հասան-Կալէի մասին կը խորհի:

Ալիշան նկատի ունենալով Զաքարիա Պատմիչի եւ Համասփիւռ ծաղկի պատմութեան վկայութիւնները՝ «Երթ ի Բասեն, եւ խնդրեա զգեօղն որ կոչի Դարոյնս, ուր Ջերմուկն է, եւ ել ի կատար լերին (Ծիրանեաց)· անդ գտանես զԾաղկին...», Հասան-Կալէն կը նոյնացնէ Դարոյնքի հետ: «Ծիրանեաց լեառն մերձ է եւ ի հիւսիսոյ Հասանկլայի, յորոյ անուն եւս կոչի: Իսկ գեօղն այն Դարոյնք կամ Դարոյնս այժմ քաղաքաւան լեալ գլուխ է ամենայն շինից ընդհանուր Բասենոյ եւ ամենայն երկրին որ ընդ մէջ Կարնոյ քաղաքի եւ Կարուց, վեց կամ եօթն ժամաւ միայն տարակաց յառաջնոյն· եւ է Հասանգալէ կամ Հասանգալայ բերդաքաղաք փոքր»: (Այրարատ 19): Անդ երկրորդ ծանօթութեան մէջ կը յաւելու Ալիշան. «Առ հինս՝ բաց ի բժշկարանէ, կամ ի պատմութենէ Համասփիւռ ծաղկին՝ ոչ յիշի այս Դարոյն, այլ բազում անգամ Դարոյնք Կոգովտի»: Կարծես Տաշեան[27] ալ հաւանած կը թուի այս նոյնացումին, երբ կը գրէ· «Ուրիշ կար-

---

[26] Josef von Hammer, Asiat. Türkei, Rec. im Wiener Jahrb., Wien 1821, Bd. XIV. էջ 35.

[27] Ֆ. Օսվալդ, Երկրախօսութիւն Հայաստանի: Թարգմ. եւ ծանօթութիւններով ճոխացուց Հ. Յ. Տաշեան: Վիեննա 1933, էջ 234, ծն. 85:

ծիք մը կ՚ըսէ թէ այս Թէոդուպոլիս ըլլալու է Բասենի Դարոյնք կամ այժմու Հասանղալայ»։

Հոնիգման[28] կ՚ենթադրէ թէ «Եպիսկոպոսական թեմերու ցանկին մէջ յիշատակուած Φασιανή, եպիսկոպոսութիւն մըն էր անշուշտ Բասեան գաւառի մէջ, եւ իր համանուն գլխաւոր քաղաքը՝ Բասեան, որ կը համապատասխանէ այժմեան Հասան-Կալէի»։

Ալիշան իր ծանօթագրութեամբ կը զգուշացնէ՝ թէութեամբ մերձենալ «Համասփիւռ»ի պատմութեան տեղիքին, որմէ միանգամայն օգտուած են ինչպէս կը տեսնուի, թէ Կարնեցին եւ թէ Զաքարիան. իսկ Հոնիգմանի ենթադրութիւնը մասնագրութեան մէջ չունի իր հաստատուն հիմը։

Այս յառաջ բերուած հեղինակներու ենթադրութիւններէն եւ ոչ մին հաստատուն կռուան մը կ՚ընծայէ այդ ամրոցին հին անուան մասին. նոյնպէս մեծ նպաստ մը չեն մատակարարեր նաեւ այն բազմաթիւ ուղեգիրները, որոնք ԺՁ. դարէն սկսեալ առիթն ունեցած են այցելելու Հասան-Կալէն եւ որոնց գրեթէ լիաթիւ ցանկը տուած է Լինչ[29]։ Այդ ուղեգիրներէն մեծ մասը բաւականացած է

---

[28] E. Honigmann, Die Ostgrenze, էջ 196: „Φασιανή ist zweiffellos ein Bistum in dem Kanton Basean, und zwar seine gleichnamige Hauptstadt Basian (Basean), die dem heutigen Hasanqalé entspricht.

[29] H. F. B. Lynch, Armenia, Travels and Studies, London 1901, հատ. Բ. էջ 470—496.

տալ բերդին նկարագրութիւնը, դիրքն ու տեղը, իսկ հնախօսութեամբ նոյնին դրեթէ պարապած չեն անոնք: Ուստի մեզ կը մնայ կրկին հարց տալ, թէ ի՞նչ էր Հասան-Կալէի հին անունը:

Համմէրի[30] համեմատ Ուզուն Հասան (1451—1478) Սպիտակախոյեց իշխանէն առնուած է Հասանկալա իր յորջորջումը: «Նա է որ ինչպէս Պարսկաստանի մէջ կառուցած է Հասանապատ քաղաքը, նմանապէս Կարնոյ մօտ Հասան-Կալէն»: Բնականաբար նոր հիմնարկութեան մը մասին խօսք կարելի չէ ընել, քանի որ իրականութիւնը բոլորովին այլապէս կը վկայէ, առ առաւելն վերանորոգման մը եւ երկարատեւ բնակութեան մը, ինչպէս կը հաստատէ Ալիշան. «Հասան ոմն մահմետական կառուցող մանաւանդ թէ նորոգող լինել բերդին յիւր անուն, եւ այս դէպ գոյ Ուզուն Հասանայ» (Այրարատ, էջ 19):

Ուզուն Հասանի տիրապետութենէն մի քանի տարի առաջ գրի առած է Թովմաս Մեծոփեցի իր Պատմութիւնը Լանկ-Թամուրայ եւ յաջորդաց իւրոց (Պարիս 1860), ուր նա Հասան-Կալէ ամրոցը կ՚անուանէ, ինչպէս մեզ կը թուի, Աւնիկ: Երզնկայի գրաւումէն յետոյ Թիմուրլէնկ կը վերադառնայ Պարսկաստան Կարին-Բայազիդ ուղիով: Այդ ճանապարհի կարեւոր ամրութիւնը կը կազմէր Հասան-Կալէն. «Եկն ի վերին կողմն աշխար-

[30] Josef von Hammer, Geschichte des Osmanischen Reiches, Pesth 1835, հտր. Գ. էջ 86.

Հիս եւ նստաւ ի վերայ ամրոցին Բասենոյ Աւնիկ կոչեցեալ. էառ զնա, եւ զիշխան նորին Մսիր անուն կապեաց, եւ ձ ոգի ի բերդէն ի վայր ընկէց անօրէնն եւ մեռան: Եկն ի վերայ գաւառին Արարատեան, աւերեաց զաշխարհն ամենայն կողոպտելով յընչից, նստաւ ի վերայ բերդին Բագրատունւոյ, էառ զնա» (անդ, էջ 45—46): Երկրորդ անգամ կը յիշէ Թովմաս էջ 82, ուր հակառակ ուղղութեամբ Թաւրէզէն «Ասպահան եղբայր նորա (Սքանդարին) եկն ի Բասեն եւ էառ զամուրն Աւնկայ»: Աւելի մանրամասն նկարագրութիւն մը ունի Ալիշան Թիմուրլենկի գրաւումի մասին. «Այլ բռնագոյնն Թուրք աշխարհակալաց՝ Թիմուր-Լէնկ, որ զամենայն խոնարհեցուցանել ձգնէր, էառ քանդեաց նախ զաւանն (4 Յուլ. 1394), ապա երկար պաշարմամբ ի նեղ արկ եւ զբերդն անմատոյց. հողաբլուր բարձր քան զքարաբլուրն կանգնեալ, փայտիւ եւ քարամբք եւ տղմով, յորմէ քարաձիգ մեքենայիւք բախէր եւ խանգարէր զբերդն. եւ ելեալ անցեալ պաշարողացն մի ըստ միոջէ ընդ բազում կամարակապս, յորոց մին յիշի 300 կանգուն լայն, հասին յոտս պարսպաց բերդին եւ սկսան խարխարել. եւ զի ջուր եւս նուազեալ էր, եւ ոչ թուլանայր Թիմուր, յետ բազում անգամ պատգամաւորութեանց, աղաչանաց եւ ժխտման, զիջաւ բերդատէրն Մսիր որդի Գարա Մուհամէտի ցեղապետի Սեւախոյից, եւ արկեալ զպաստառակ ի պարանոցն եւ սակր մերկ ի ձեռին,

էջ առ բնաւորն (յՕգոստ. 16), որոյ խնայեալ ի կեանսն՝ առաքեաց զնա ի Սմըրղանտ, եւ հինգ օր տօն կատարեալ անդ՝ յանձնեաց զամուրն յԱզլմիշ ումն, եւ գնաց: Բայց առ քէն վրիժուց ասեն ոմանք, արս հարիւր գահավէժ արար ի բարձանց բերդին: — Յետ ոչ բազում ամաց (1412)[31] ի ժամանակի դեսպանութեան առ Պայազէտ Սուլտան Օսմանեանց՝ դարձեալ եկն եւ աստ դադարեաց Թիմուր. եւ յետ երկուց ամաց (1414)[31] յիշի այլ բերդապահ (Տուլտաէր°), զոր վասն հաւատարմութեանն մեծարեաց յոյժ» (Այրարատ, էջ 28):

Ըստ Ալիշանի այս վկայութիւններն իրենց առարկայ ունին այն Անիկ ամրոցը, որ արդի աշխարհագրական քարտէսներու վրայ նշանակուած է Բասենի դաշտէն բաւական հեռու, անոր հարաւ-արեւելեան կողմը՝ Երասխի աջին, Ախդաղի եւ Գիւջիւր լեռներու միջեւ, Ուլուդերէ գետակին վրայ: Այս

---

31 Թիմուրլենկի մահը տեղի ունեցած է 1405ին, հետեւաբար այս թուականները չեն կարող ուղիղ ըլլալ, նաեւ տպագրական վրիպակներ ալ չեն «Այրարատի» մէջ, այլ առնուած են անոնք «Cherefeddin Ali, Histoire de Timour-Bec, traduite en francais par Pétis de la Croix, Delf 1723» գործէն, որուն մէջ, ինչպէս Հրատարակիչն ուշադիր կ՛ընէ հեղինակին Յառաջաբանէն յետոյ, սպրդած է կարեւոր ժամանակագրական մեծ վրիպակ մը. Elle commence à la page 26 du premier volume, ou l'an de l'Hegire 761 est rapporté à l'an de Grâce 1369, au lieu de 1359. Նոյն սխալը չարունակուած է Պատմութեան չատ մը մասերուն մէջ, որ. հ. 1402—1405 դէպքերուն մէջ, ուր այդ թուականները տպուած են 1412—1415:

ամրոցին մանրամասն նկարագրութիւնը տուած է Կոխ[32], որ հետագայ համեմատութիւններու համար անհրաժեշտ կը նկատենք ներկայացնել այստեղ։

Բասէնի դաշտին հիւսիս արեւելեան սահմանին վրայ վերջին գիւղը կը կազմէ Եաղան (Jaghan), ուրկէ հինգ ժամ հեռու հարաւ-հարաւ արեւելեան ուղղութեամբ կը գտնուի Անիկ ամրոցը։ Արշաւախումբը կը մեկնի ուրեմն այդ գիւղէն դէպի Անիկ։ Մէկուկէս ժամ ձիավարելէ յետոյ կը հասնին անոնք վտակ մը Ուլուդերէ։ Գետակը կը հոսի հովտէ մը, որուն ձախակողմեան եզերքին վրայ տակաւ կը բարձրանան բլուրներ եւ երեւան կու գան կոնաձեւ բոլորովին սպիտակ ժայռեր, եւ որոնց ներքեւ կը գտնուի ողորմելի գիւղ մը Թասու (Թաւուզ)։ Կը շարունակեն ճանապարհը նոյն ուղղութեամբ հովտին մէջէն։ «Ի սկզբան գետահովիտը բաւական ընդարձակ էր, սակայն տակաւ տակաւ կ՚անձկանար ան եւ հետզհետէ կը յաճախէին պալեր այնպիսի քանակութեամբ որ ստիպուած կ՚ըլլայինք յաճախ մագլցել հասնելու համար մեր նպատակակէտին։ Անոնք երեւան կու գային մերթ սեպաձեւ կողերով եւ մերթ հսկայ զանգուածներով կը բարդուէին դարաձեւ վրայէ վրայ, կազմելով հրաշալի գեղանկար մը. եւ գե-

[32] Karl Koch, Reise im Pontischen Gebirge und Türkischen Armenien, Weimar 1846, հտր. Բ. էջ 337—342.

տակը կը բռնադատուէր փոխել ստէպ իր ընթացքը: Այդ նոր ուղղութեամբ ընթացանք կէս ժամ ալ: Եւ ահա յանկարծ մեր առջեւ կանգնած տեսանք հետաքրքրական քարաբերդն իր բովանդակ մեծութեամբ եւ զարմանալի տեսքով: Հիացումի եւ զարմանքի մատնուած մօտեցանք անոր եւ կիսաշրջան մը բոլորելով հասանք հանդիպակաց Անիկ գիւղը:

«Նեղ կիրճի մը վրայ, ամրոցին ճիշդ ետին, ուր բերդաբլուրը 600 ոտք դէպի երկինք ուղղաձիգ կը բարձրանայ, կային միայն մահմետականներէ բնակուած 60ի չափ տուներ, որոնք իրենց դարաձեւ ոճով տեղւոյն արդէն բնական գեղանկարին վրայ նոր գեղ մըն ալ կ'աւելցնէին: Այս տարակաց անկիւնին մէջ բնակիչները շատ աւելի հիւրասէր էին քան շատ յաճախուած գիւղերը մեծ պողոտային վրայ: Բնակիչները թէեւ իրենք զիրենք Օսմանլը կ'անուանէին, սակայն իրենց կազմով ու կերպարանքով հարազատ հայկական դրոշմն ունէին եւ միայն կրօնքով կը տարբերէին Եաղան գիւղի իրենց եղբայրներէն:

«Շատ յաճախ այցելած եմ օտար երկիրներ եւ շատ բան տեսած, սակայն նման ամրոցի մը ոչ մի տեղ հանդիպած եմ: Երկրախօսական կերպաւորումներ նաեւ այստեղ սակաւ բացառութեամբ առաջ բերած են բլուրներ եւ լեռներ, բայց իրենց եզական այս ձեւերը կը պարտին ընդերկրեայ ուժե-

քուն: Երկիրն իսկ շատ մը տեղեր բացուած եւ անոր խորքին մէջ կազմուած պալեր՝ պաղած դուրս են ժայթքեր նկարագեղ ժայռեր ներկայացնելու համար: Այսպիսի յառաջակարկառ զանգուած մըն է այս ժանեւոր լեռը, որուն վրայ հաստատած են ժամանակին ամրոց մը տեղւոյն իշխանները: Յատակը կազմուած է գոյնզգոյն փշտիկաւոր, բոլորովին միաձոյլ կանաչագեղ արաստոյ քարէ մը, մինչ վերի մասը սեւակճեայ չեղջաքարէ եւ ուղղահայեաց բարձրացող եւ ցանցառ զանգուածային հսկայ կտորներու բազմութենէ մը: Դէպի հարաւ, այսինքն գիւղի կողմը, լեռն՝ ինչպէս ըսուեցաւ, սեպաձեւ հատածի մը նման ուղղաձիգ կը ձգուի վար, մինչ հակառակ կողմը, ուսկից ուղին կ՚անցնի, որոշ հեռաւորութեամբ վրայէ վրայ կեցած պատուարներ կը կազմէ: Արեւմուտքէն կը միանայ իր մօտ բարձրացող բլուրին հետ, սակայն բոլորովին անջատ կը մնայ իր մէկերրորդ մասով եւ այս կողմէն. բնաւ հնար չէ բարձրանալ: Արեւելքէն մինչեւ ստորոտը թէեւ ոչ մի բարձունքի հետ կապ ունի, սակայն վրայէ վրայ դարաւանդներ ունի, որոնց շնորհիւ եւ որոնց վրայ ժամանակին ճամբայ հարթած են, անտարակոյս ամենամեծ դժուարութիւններով: Լերան կատարին վրայ կը բարձրանան 40—50 ոտք բարձրութեամբ իրարու կից երեք ժայռեր, որոնց շուրջը կառուցուած է վերնագոյն բերդը: Նոյն իսկ միջին ժայռը մասամբ փորած են եւ բնակա-

բանի վերածած : Աս հասարակ այն ամէն տեղ, ուր լեռը թէ արեւելեան եւ թէ արեւմտեան կողմը որեւէ հարթ վայր մը ունեցած է, չահագործուած է. եւ այսպէս կարելի է ըստ ինքեան երեքկարգեան ամրոցներ զանազանել :

«Ելքին եւ ճանապարհին գլխաւոր շինականի մը ընկերակցութեամբ որոշեցի լեռն ի վեր մագլցիլ, որովհետեւ յատուկ ուղի մը գոյութիւն չունէր : Այծեամի նման ոտքով ու ձեռքով կը մագլցէինք ժայռերն ի վեր, եւ յաճախ կը զարհուրէինք երբ մեր ետին ահագին անդունդը կը դիտէինք, ուր ամէն վայրկեան կարող էինք գահավիժիլ : Հիւսիսարեւելեան կողմը կը բարձրանար անջատ ժայռ մը եւ միայն իր խարիսխով կապ ունէր ամրոցի լերան հետ, եւ որովհետեւ առիչեղ կ'իջնէր վար, կարելի էր անոր երկու երրորդ բարձրութիւնը ելլել : Այդ տեղէն իբր թէ, ինչպէս կը պատմեն, կամուրջ մը եղած է առաջին դարաւանդը անցնելու համար, եւ տակաւին որմերու զոյգն մնացորդներ կը տեսնուին :

«Այս առաջին դարաւանդը մինչեւ այն տեղ, ուր ժայռերը սեպաձեւ կը կտրուին, պատուած էր մասամբ կիսափուլ պարիսպով մը, սակայն ներքին շինուածներէ գրեթէ ոչինչ մնացած է : Ամենադժի բուսականութեամբ ծածկուած զառիվայր մը 40—50 աստիճան շեղութեամբ կը կազմէ բերդին այս առաջին մասին ներքին անջրպետը, միայն

Հարաւակողմի պատիթափին վրայ կարելի է ոտքի կռուան գտնել: Կրկին մայլցի եւ յափափիթերս հասանք ամրութեան միջին վայրը եւ որքան ալ շատ անհարթ գտանք զայն, սակայն եւ այնպէս ամրոցի այս մասն աւելի յատուկ դարաւանդ մը կը ձեւացնէր: Մի քանի ժայռեր մասնաւորապէս հարաւակողմը, կը շրջապատէն վայր մը եւ ուր կը նշմարուէին որմածներու հետքեր: Այդ տեղ ժայռերէն կազմուած էր դար մը, որ իբր թէ բնակութեան համար գործածուած էր, բայց ես որեւէ պատի հետք չտեսայ: Առաջնորդս ցոյց տուաւ ինձ որմած փոս մը, որ կ'առաջնորդէր մեծ ստորերկրեայ ներքնատուն մը, որ հին ժամանակ իբր բանտ ծառայած ըլլալու է: Դարձեալ մատնանիշ ըրաւ ինձ տեղ մը, ուր առաջ աղբիւր մը բխած եւ որ իբր ջրամբար գործածուած ըլլալու է: Շատ զարմանալի պիտի ըլլար, եթէ այդ տեղ իրապէս աղբիւր մը գոյութիւն ունեցած ըլլար:

«Վերին ամրոցը, որ լերան կատարը կը բռնէ, մասամբ միայն հարթ է, եւ կը տարածուի վերոյիշեալ երեք ժայռերու շուրջը: Այստեղ ալ կարելի չէ որոշ բան մը զանազանել, թէեւ որմերու բաւական մնացորդներ աչքի կը զարնեն: Առաջնորդս այն մասերը որոնք առ հասարակ տակաւին մնացած էին, մզկիթի մը աւերակները կը համարէր: Քար մըն ալ արձանագրութիւն մը ունէր «ԱԼԼԱՀ» արաբական գրով: Արեւմտեան ժայռի կողմը կար 30 չափ խորութեամբ վի-

մափոր գուբ մը, որ ճեղքի մը հետ, որ քարին խորքը կ՚աներեւութանար, յարաբերութեան մէջ էր. կը պատմուի թէ ամէն Ուրբաթ՝ մահմետականներու նուիրական օրը, ջրով կը լեցուի»:

Նկարագրելէ յետոյ թէ ինչպէս վերին ամրոցէն մի քիչ վար դաւիթափի մը վրայ, ուր կ՚աճի վայրի վարդ մը, հիւանդներ չուաններով եւ այլ միջոցներով վեր կ՚ելլեն, անհնարին դժուարութեամբ, այդ տեղ իրենց գրգլիքներէն ծուէն մը կապելու համար վարդի ճիւղերուն, կը շարունակէ. «Երկար ժամեր պէտք էին այդ եզական ամրոցին վայրավատին կէտերը մի առ մի դիտելու համար, որքան ալ չնչին աւերակի մնացորդներ գտայ այնտեղ, սակայն անոր առանձնայատուկ դիրքն ինձ բոլորովին գրաւեց: Անոր կատարէն նաեւ տեսարանը հրաշալի էր, որչափ ալ մարդու հայեացքը շատ հեռուներ չէր կարող թափանցել: Հիւսիսային կողմը կը տարածուէր մեծ հովիտն իր կրային, բայց դալարապատ բարձրաւանդակներով. եւ հեռուն ներքին Բասենը, որ կրկին բարձր սարերով կ՚եզրափակուէր: Դէպի արեւելք կարող էի Ուլուդերէ վտակի ընթացքը մինչեւ իր ակնաղբիւրը հետապնդել, սակայն անարի լեռ մը իր խրոխտ՝ հաւանօրէն խաւաքար ժայռերով, որ Աւնիկ լ. կը կոչուէր, կը խափանէր աւելի հեռուներ դիտել. եւ անտարակոյս նա կը միանար այն հսկայ՝ Արածանի-Երասխ ջրաբաշխ Շահէօլ կոչուած լեռներու

հետ: ...Արեւմտեան կողմը կը բարձրանայ ընդ մէջ Ուլուդերէի եւ Երասխի աննշանակ բարձունք մը, որ սակայն արգելք կ՚ըլլայ աւելի հեռաւոր վայրեր գննելու: Իսկ հարաւը կանգնած էին հանդիպակաց կճեայ բարձունքները: Լեռը թէեւ շատ քիչ տեղեր ունէր հողով ծածկուած, սակայն բուսականութեան կողմէ շատ հարուստ էր»:

Նոյն հեղինակը կու տայ նաեւ Հասան-Կալէի նկարագրութիւնը միեւնոյն գործին մէջ (էջ 322—324), որմէ յարմար կը տեսնենք յառաջ բերել այն մասերը, որոնք կերպով մը կը լրացնեն Ալիշանի եւ Սարգիսեանի համապատկերը:

«Հասանկալէ ամրոց մըն է, կամ աւելի ճիշդ՝ էր, որ Կարին-Թաւրիզ տարանցիկ մեծ ճանապարհին վրայ կ՚իշխէ. եւ իբրեւ այսպիսի ամենամեծ կարեւոր կէտը կը կազմէ: Ռուսերը վերջին պատերազմին (1828) Թուրքերու դէմ, մեծ մասով ամրակոծած են բերդը եւ անխելք Թուրքերը մինչեւ այսօր ալ այդ կարեւոր վայրը ձգած աւերակ վիճակի մէջ, կարծես բնաւ հարկը չեն տեսներ, իրենց երկիրը օտար թշնամիի դէմ պաշտպանելու: Նա կը գտնուի առաջակարկառ ժայռի մը վրայ դէպի հիւսիս երկարաձգուող Կիրեճլիդաղ կոչուած լեռնաշղթային եւ այն՝ անոր արեւմտեան աւելի հարթ կողին վրայ, որ առիշեղ տակաւ առ տակաւ կը բարձրանայ (դաշտի երեսէն մինչեւ 300—400 ոտք բարձրութեամբ) բլուր մը կազմելով:

Նա շրջապատուած էր կրկին պարիսպով, որ այժմ աւերակոյտի վերածուած են. միայն անոնց դուռները դեռ կանգուն կը մնան իրենց փեղկերովն իսկ: ...Քաղաքը չունի ոչ մի հետաքրքրաշարժ շէնք, այլ միայն մզկիթ մը սպիտակ աշտարակով, որ հեռուէն Բասենի դաշտին ամէն կողմէն կը տեսնուի: Տուներն առ հասարակ լաւ են, կը գտնուին նոյն իսկ երկյարկանի բնակարաններ եւ նաեւ չեն պակսիր այնպիսիներ, որոնք յեցած բլուրի կողքին, հարազատ հայկական-վրական ոճով, կարծես լերան կողքին միայն ծակեր ըլլային:

Քաղաքին վրայ կ՚իշխէ բերդը, որ կը թուի թէ վաղուց ի վեր կործանած է եւ տարուէ տարի աւելի եւս կը խարխալի: Ռուսերն երբ տիրացան անոր եւ մտադիր էին հաստատուիլ այն տեղ, ուզեցին բերդը վերականգնել անոր ռազմագիտական կարեւորութիւնը նկատի ունենալով. այդ գործունէութեան հետքերը տակաւին անջինջ կը մնան:

Մինչ լեռը՝ արեւմուտքէն թէեւ նոյնպէս սեպաձեւ, բայց ոչ ժայռերէ ընդհատուելով, առիշեղ կը կարկառի ներքեւ, հարաւ եւ արեւելեան կողմը կարծես ժայռերու բարդերէ կազմուած ըլլար, որոնք եզական ձեւով իբր սրածայր ապառաժներ եւ կամ բազմանկիւն զանգուածներ կը ներկայանան մեր աչքին: Կը թուի նոյն իսկ, որ անյիշատակ ժամանակ մը այսպիսի սուսար կտորներ սա-

համ ինկած ըլլան: Դէպի հարաւային եւ արեւելեան կողմը միջնաբերդը կ՚երկարի վար տարածեւ կազմուած ժայռերու միջեւ եւ մի քանի առաջակարկառ սրածայրեր իբրեւ աշտարակ գործածուած են եւ տակաւին կանգուն կը մնան մասամբ անոնց որմերը: Ընդերկրեայ հոլովոյթի ժամանակ, երբ ժայթքումը տեղի ունեցած է, ինչ ինչ ժայռեր այնպիսի դիրքեր ստացած են, որ պաղանձաւներ երեւան եկած են. Նման կամարակապ անձաւ մը կը գտնուի լերան ճիշդ մէջտեղը: Դա ժամանակին իբր բնակարան գործածուած պիտի ըլլայ, եւ որմած արահետ մը կ՚առաջնորդէ մինչեւ անոր մուտքը: Նոյնպէս լերան ստորոտին վրայ անհեթեթ զանգուած մը դէպի մէկ կողմ առկախ հակուած ըլլալով կը կազմէ գոգ մը, ուր կարելի է ապաստանիլ հովի եւ անձրեւի ժամանակ, բայց քարայր մը, ինչ որ Համիլտոն կ՚անուանէ, ես չգտայ»:

Այս երկու բերդերու տեղերուն եւ դիրքերուն հետ ծանօթանալէ յետոյ, դիւրին կ՚ըլլայ համեմատութեան դնել զայն այն նկարագրութիւններու հետ, զոր կ՚ընծայեն մեզ հնագոյն ուղեգիրներն ու պատմագիրներն Անիկ ամրոցի մասին: Վերն առաջ բերինք Անիկի պաշարման մասին Ալիշանի մէկ նկարագրութիւնը, զոր նա քաղած է Շերեֆեդդինի «Պատմութիւն Թիմուր-Բեկի» [33] եր-

[33] Cherefeddin Ali, Histoire de Timour-Bec, traduite en françois par Pétis de la Croix, Tome I—IV. Delf 1723.

կէն, առանց որոշապէս աղբիւրը մատնանշելու: Շէրէֆէդդին շատ յաճախ առիթ ունեցած է իր գործին մէջ Աւնիկ ամրոցը յիշելու, որով բարեբախտութիւնն ունինք այդ տուեալներուն վրայ յեցած տեղադրելու եւ որոշելու այդ ամրոցին յատուկ վայրը եւ նաեւ դիրքը: Առ այս պատշաճ կը տեսնենք այս պատմագրին վկայութիւնները Աւնիկի մասին մի առ մի առաջ բերել եւ հաստատել թէ անունք կը վերաբերին Հասան-Կալէին եւ ոչ թէ արդի Աւնիկի՝ ձորամիջի բերդին:

Թիմուրլենկի բովանդակ արշաւանքներու ժամանակ դէպի Հայաստան, առանձնապէս երեք վայրեր յիշատակութեան արժանի եղած են. Ալադաղ (Ծաղկոտն), որ ռազմագիտական ուղեգծերու կենդրոնավայրը կը կազմէր, ուսկից կը բաժնուէին հարաւ, հիւսիս եւ արեւմուտք ռազմուղիները. Իւչ-Քիլիսէ (հին Բագաւան)-Վան, Իւչ-Քիլիսէ-Մուշ եւն. Բ. Իւչ-Քիլիսէ-Ալաշկերտ-Հասան-Կալէ-Էրզրում. Գ. Իւչ-Քիլիսէ-Երեւան կամ Իւչ-Քիլիսէ-Սուրմալու-Կարս եւն: Երկրորդ Ղարաբաղ, որ իր հանգստավայրն եղած էր: Երրորդ Աւնիկ, որ դէպի Փոքր Ասիա արշաւանքներու մեկնակէտն եւ վերջակէտը կը կազմէր: Եւ այս պատճառաւ ամէնէն աւելի յեղյեղուած է այս ամրոցին անունը Շէրէֆէդդինի մօտ:

Թիմուրի առաջին արշաւանքի նպատակը կ'ըլլայ դէպի հայկական միջնաշխարհը, գրաւել ռազմուղիները վանց առնելով ամուր

կէտերը։ Ըստ այսմ «Թիմուր կը մեկնի Թաւրիզէն Նախիջեւան, զոր դիւրաւ կ՚առնէ եւ յետոյ կ՚ուղղուի դէպի արեւմուտք Alatac՝ Ծաղկոտն գաւառը, ուր բանակ կը դնէ եւ աւարի կ՚ենթարկէ շրջակայ երկրին Aidinի այժմ Բայազիդի բնակիչները։ Կը շարունակէ ճանապարհը եւ կը հասնի Avenic՝ Աւնիկ, ուր կ՚իշխէր Մըսըր Կարա Մէհէմէդի որդին։ Կողոպուտէ զերծ չեն մնար այս գաւառին բնակիչները լեռներու եւ դաշտերու վրայ։ Առանց բերդը գրաւելու փորձ ընելու կը խաղայ յառաջ դէպի Կարին, զոր կը պաշարէ եւ կը գրաւէ։ Ուսկից կը մեկնի Մուշ, յետոյ Ախլաթ եւ Ադիլջաւազ եւ ապա Վանայ ծովակն արեւմուտքէն դէպի հիւսիս-արեւելք ուղղութեամբ բոլորելով կը հասնի Bend Mahi, ուսկից դարձեալ կու գայ Ալադաղ, Abara Serai դաշտը, ուր բանակեցան էր» (Հատ. Ա., էջ 432—437)։

«24 Յունիս 1394ին Թիմուր Իւչ-Քիլիսէէն կ՚երթայ Այդին, ուր ստանալով տեղւոյն իշխանին հպատակութիւնն ու մեծամեծ ընծաները, նոյն գիշերն իսկ կը վերադառնայ Իւչ-Քիլիսէ։ Այստեղ կը գտնէ նա Երզնկայի տէրը Թահարտէն իշխանը, որ եկած էր իր հպատակութիւնը յայտնելու տիեզերակալին, մինչդեռ Մըսըր Կարա Մէհէմէդի որդին առ ոչինչ դրած էր Թիմուրի հրաւէրը։ Այս պատճառաւ աշխարհակալը կ՚որոշէ տիրանալ անոր ամուր քաղաքին։ Կը հրամայէ Միրզա Մէհէմէդ սուլտանին

երթալ գրաւել Անիկ. ինքը կու գայ Ալաշկերտի դաշտը, ուր կը բանակի, սակայն երկար չի մնար. փութով կ'աճապարէ Քէօսէդաղի (Սուկաւ) լերան ուղեգծով (Բասեն), երկու օրէն կը հասնի Անիկ, Միրզա Մէհէմէդէն առաջ, ի ձայն փողոյ եւ թմբկի: Յուլիս 4ին կը ձեռնարկէ քաղաքի պաշարման եւ բուռն յարձակումով մը կը տիրանայ պարիսպին եւ քաղաքին: Մըսըր կը ստիպուի իր ռազմիկներով միջնաբերդը քաշուիլ, որ կառուցուած էր բարձր եւ սեպ լերան մը վրայ, որուն բոլոր այն անցքերը, ուսկից հնար էր վեր ելլել, փակած ամրացուցած էին եւ շրջապատած պարիսպով մը այն կողմը, որ կ'իյնար լերան գագաթին վրայ. նոյնպէս հզօր կերպով զօրացուցած մուտքը՝ դուռը: Մըսըր վճռած էր մինչեւ վերջ պաշտպանել ամրոցը: Թուման հրամանատարները եւ բանակի քաջագոյնները հետիոտն իրենց վահաններուն պաշտպանուած կը փորձեն բարձրանալ մինչեւ դուռը, որուն վրայ յարձակում մը կը գործեն. միւս կողմէ ամրոցը շուրջանակի պաշարելէ յետոյ թմբուկներու եւ ծնծղաներու դափահարումի հետ խոյերն ու պաշարման գործիքները կը բախեն պարիսպները եւ այրուձին ալ կը բարձրացնեն մինչեւ պատնէշներու բարձրութեան, որպէս զի նետահարեն այն մարտիկները, որոնք պիտի համարձակէին բարձունքներէն արգելք հանդիսանալ իրենց վերելքին:

«Յուլիս 5ին Մըսըրի կողմէ պատգամաւոր մը կու գայ հաշտութիւն խնդրելու համար: Թէեւ կը շնորհուի այն, սակայն Մըսըր կը նախընտրէ անձնատուր չըլլալ: Երկրորդ օրը Թահարտէն իշխանը կը ջանայ յորդորել ամրոցին տէրը անձնատուութեան, բայց ի զուր: Մըսըր երկրորդ անգամ իբր պատգամաւոր կ'ուղարկէ իր մատաղատի որդին եւ մերձաւոր ազգականներէն Սեւիլմիշ: Դարձեալ ապարդիւն: 7 Յուլիսին կը հասնի Միրզա Մէհէմէդ. այդ գիշեր զինուորները կը փորձեն բարձրանալ ուղղակի դէպի լեռան կատարը, կամարակապներու ստորոտէն, ուր յարձակում մը կը գործեն, որ մինչեւ առաւօտ կը տեւէ...: Թիմուր պաշարումը կը զօրացնէ եւ յարձակումը կը սաստկացնէ, քարաձիգ մեքենաներով կը բախէ պարիսպները ուժգին եւ լերան վրայ բազմաթիւ տուներ: Մըսըր այս անգամ իր մայրը կ'ընտրէ իբր պատգամաւոր հաշտութեան համար: Թէեւ մեծ ընծաներով եւ ներման խոստումով նա կը վերադառնայ իր որդւոյն մօտ, սակայն Մըսըր նորէն կը յամառի պաշտպանել ամրոցը եւ անձնատուր չըլլալ:

«Թիմուր կը հրամայէ տեղւոյն վրայ բլուր մը կանգնել նոյն բարձրութեամբ: Զինուորներն երեք օր հեռաւորութեամբ կ'երթան ծառեր կը կտրեն ու կը բերեն, քարով, հողով ու փայտով կը կազմուի քիչ ժամանակէն բլուր մը բարձր քան ամրոցը. ուսկից քարընկէց մեքենաներով սաստկակոծ կը կոծեն,

այն աստիճան սաստկութեամբ որ լեռը կը թնդար իր հիմէն: 30 Յուլիսին պաշարուածները նեղուած ջուրի պակասութենէն, կը վտարեն դուրս բոլոր աւելորդ բնակիչները քաղաքին· այժմ կը մնային ամրոցին մէջ սպաները եւ պահապան զօրքը: Մըսըր կը շարունակէր պաշտպանութեան գործը: Իսկ խոյերն ու մեքենաները կը գործէին անդադար եւ մեծ աւեր առաջ կը բերէին: Մըսըր չորրորդ անգամ իր տեղակալը կ'ուղարկէ Թիմուրի, որ դարձեալ կը խոստանայ ներել իրեն եթէ անձնատուր ըլլայ· այս անգամ ալ կը նենգէ Մըսըր:

«Գումարտակ մը մեր քաջ զինուորներէն յառաջացած ըլլալով լերան կամարակապները եւ կտրած անցած նեղ արահետներ եւ հասած դժուարմերձենալի տեղեր, կը մնայ այն գիշեր· այդ տեղ: Խոջա Շահին, որ անոնց մէջ էր, իր 7 զինուորներով կը յառաջանայ, կը բարձրանայ ուրիշ կամարակապ մը եւ կը հանէ բերդին պարիսպին ստորոտն· անմիջապէս հրանշան մը կու տայ բանակին: Արղունշահ եւ Ամանշահ տեսնելով զայն իսկոյն կը բարձրանան մի քանի քաջ մարտիկներով նոյն տեղը: Մինչ այդ՝ պաշարուողներէն կը նշմարուին հակառակ մթութեան եւ յարձակումի կ'ենթարկուին: Ամանշահ ծանրապէս կը վիրաւորուի եւ կը ստիպուի վերադառնալ բանակ: Արղունշահ եւ միւս քաջերը կը բարձրանան ուրիշ ժայռակամար մը, որուն լայնութիւնն էր 300 կան-

գուն. եւ այսպէս կը հասնին միջնաբերդին պարիսպին ներքեւ: Կը սկսին գործի. կացինով, քարհատով, մուրճով ու բրիչով քիչ ժամանակէն կը փլցնեն պատը եւ կը յարդաբեն բացուածք մը նեցուկներով: Սպաներն ու պահապան զօրքը տեսնելով թէ այլ եւս ամէն բան կորսուած է իրենց համար, չեն ուզեր դիմադրել. կը լքեն իրենց առաջնորդը, ոմանք յուսահատ կը նետուին անդունդն ի վար. իսկ մնացածները բարձրաձայն կ՚աղաղակեն ու կը բողոքեն Մըսըրի դէմ, ըսելով թէ իրենք անձնատուր պիտի ըլլան: Իշխանը կը ջանայ իր մարդիկը հանդարտեցնել եւ այս անգամ հաշտութեան համար իր մայրն ու որդին կ՚ուղարկէ Թիմուրի, որ մօր մը աղի արտասուքներէն զգածուած կը խոստանայ ներել եւ կեանքը շնորհել: Մըսըր բռնադատուած վերջապէս կը լքէ ամրոցն եւ կ՚իջնէ ներքեւ վզին պատած պարան մը եւ մերկ սուսեր ի ձեռին» (Հատ. Բ. գիրք Գ. էջ 298—311):

Թիմուր ամրոցը կը յանձնէ Ատըլմիշ զօրավարին եւ անոր գրաւման առթիւ կը կատարէ յաղթութեան տօն մը լի խրախճանքով, որ կը տեւէ հինգ օր: 1394 Օգոստոս 21ին կը մեկնի Ալադաղ եւ կը դիմէ Այդին = (Դարինք) նշանաւոր բերդին դէմ. կարճատեւ պաշարումէ մը յետոյ տեղւոյն տէրը Բայազիդ կը հպատակի եւ ներման կ՚արժանանայ եւ վերստին կը հաստատուի իր նախկին տէրութեան մէջ (անդ, էջ 313—315):

*Այստեղ Ծաղկոտն գաւառի մէջ մեծ հանդէսներ կատարելէ յետոյ կը մեկնի Վրաց դէմ, նախ Կարս, ապա Տփղիս (անդ, էջ 315—317):*

*Վրաստանի արշաւանքէն կը դառնայ Աւնիկ, ուր կը գտնէ զօրավար Ալլահդադ: Այս տեղէն կ՚ուղղուի Կարին–Երզնկա նուաճելու համար Սեբաստիան (անդ, Հատ. Գ. Գիրք Ե., էջ 263): Դարձեալ Թիմուր 1402ին գարնան Վրաստանէն կու գայ Աւնիկ, ուր կը մնայ երկու ամիս սպասելով պատգամաւորներու վերադարձին, որոնք գացած էին սուլտան Բայազիդի: Յետոյ կը մեկնի Կարին, ուր կու գան կը միանան իրեն զօրավարներ իրենց բանակով Ալադաղ–Աւնիկ ճանապարհով (Հատ. Գ. Գիրք Ե., էջ 410—412):*

*Միրզա Մէհմէդ՝ Թիմուրի սրտի հատորը, երբ կը մեռնի, դիակը կը փոխադրուի նախ Աւնիկ եւ ապա Սուլտանիա (Հատ. Դ., էջ 69—70):*

*Թիմուր՝ սուլտան Բայազիդի յաղթելէ եւ անոր բովանդակ ասիական երկիրը նուաճելէ յետոյ, կը մտադրէ դառնալ Աւնիկ, կը հրամայէ արքունի ընտանեաց անյապաղ գալ միանալ այնտեղ: Ինքն իր բովանդակ բանակով Երզնկա–Կարին ուղիով կու գայ Աւնիկ եւ կը պատուիրէ նաեւ իշխաններու եւ զօրավարներու գալ հոն տիկիններէ առաջ: Իշխանուհիները Թաւրիզէն կը մեկնին եւ երբ Աւնիկ կը հասնին, կը լսեն Մէհմէդի մահը, թուխ կը զգենուն եւ բոլոր արքունիքն ու*

բանակն առհասարակ կ՚ողբան վաղաժամ մահը քաջ Մէհմէդի եւ նուիրական հոգեհացով մը կը նուիրագործեն անոր յիշատակը (անդ, էջ 80—86)։

Շէրեֆեդդին կը վերջացնէ իր տեղեկութիւններն Աւնիկի մասին հաղորդելով մեզ, թէ «Երբ Թիմուր կը վերադառնար իր մայրաքաղաքն Արդեբիլի եւ Միանայի վրայէն անցնելով, կը մտնէ Սերճեմ, ուր ընդ առաջ կու գայ իրեն Աւնիկի իշխանը Դուլադայ Բեկ» (անդ, էջ 151)։

Թովմաս Մեծոփեցւոյ Աւնիկի գրաւումի մասին համառօտ յիշատակութիւնը եթէ լրացնենք Շէրեֆեդդինի մանրամասն նկարագրութեամբ, կ՚ունենանք հետեւեալ հաստատուն իրողութիւնը՝ թէ Աւնիկ նոյն է Հասանկալէի հետ եւ ոչ մի առնչութիւն ունի արդի Աւնիկ բերդին հետ։

Վերն յիշատակեցինք թէ Լենկթիմուրի արշաւանքները տեղի ունեցած են Բայազիդ-Ալաշկերտ-Հասանկալէ-Կարին ուղեգծով. արդ Շէրեֆեդդինի տեղեկութիւնները լիապէս կը հաւաստեն այդ բանը Քէօսէդաղի՝ Սուկաւ լերան, յատկանշական յիշատակութեամբ։ Թիմուր Ալաշկերտէն Քէօսէ-դաղի անցքէն կը դիմէ Աւնիկ=Հասանկալէ երկու օրէն, ճիշդ այն գծով, որով արդի կարաւանի եւ նաեւ ռազմագիտական ճանապարհը կ՚անցնի։ Ալաշկերտ-Քէօսէդաղ-Ամրագոմ-Զորանքէօփրի-Հասանկալէ հեռաւո-

րութիւնն ըստ զօրավար Գարդանի[34] երեսուն ժամ է կամ երկու օր:

Իսկ այժմեան Աւնիկի մօտէն կամ ստորոտէն չ'անցնիր ընդարձակ ուղի մը, ուսկից կարող ըլլային կարաւաններ եւ բազմամբոխ բանակներ երթեւեկել. կայ այո՝ արահետ մը, ուսկից անցնելու համար հարկ էր տեղ տեղ նոյն իսկ մագլցել, ինչպէս Կոխի նկարագրութենէն այնքան պայծառ կը տեսնուի: Յետոյ ո՞ւր կարելի էր այդ աշխարհաժողով բանակներու, նախարարներու եւ արքունի տան բովանդակ բազմութիւնը պարփակել արդի Աւնիկի ցից դարաւանդներու վրայ: Մինչդեռ Բասենի ընդարձակ եւ համատարած դաշտն եւ Հասանկալէի քաղաքին եւ բլուրին լայն հարթավայրերն ամէն տեսակէտով ձեռնտու են այդպիսի հոծ բազմութիւն մը իր մէջ ամփոփելու եւ նաեւ բիւրաւոր բանակներու խնճոյքի եւ աշխարհաժողով հանդէսներու յարմարագոյն վայր մ'ընծայելու: Արդի բերդը կարաւանի ուղիէն բոլորովին մեկուսի կը գտնուի, մինչ Շերեֆեդդինի Աւնիկը չարունակ Թիմուրի արշաւանքներուն գլխաւոր անցուդարձի հանգոյցը կը կազմէր, եւ իբրեւ այդպիսի միայն ու միայն Հասանկալէն կարող է ըլլալ:

Այս նոյնութեան ի նպաստ ունինք աւելի

---

[34] A. de Gard ane, Journal d'un voyage dans la Turquie d'Asie et la Perse, 1807—1808, Paris et Marseilles, 1809 Թարգմ. Յ. Յակոբեան, Ուղեգրութիւններ, հատոր Զ. էջ 88—135, հմմտէ էջ 98—99:

կանխագոյն ժամանակներէ վկայութիւններ, որոնցմէ կարեւորագոյնները կը փութանք այստեղ յառաջ բերել:

Շերեֆեդդինէն երկու տասնեակ տարիներ յառաջ գրի առած է սպանիացի նշանաւոր ուղեգիր մը՝ Ռույ Գոնզալեզ դի Կլավիխոյ[35], իր ուղեգրութիւնը դէպի Սամարղանդ, Լէնկթիմուրի արքունիքը: Այն ուղին, զոր նա այնքան մանրամասն եւ ճշգրիտ կը նկարագրէ, կը կազմէ արդի կարաւանի գիծը՝ Տրապիզոն–Երզնկա–Էրզրում–Ալնիկ–Մակու—Խոյ եւն: Հասանկալէէն դէպի Պարսկաստան երկու ուղիներ կան. մին Քէօփրիքէօյ–Ալաշկերտ–Բայազիդ–Պարսկաստան, միւսը՝ ինչպէս Բոժուր[36] կը նկարագրէ «Հասանկալէէն–Պարսկաստան գիծը կ՚ուղղուի դէպի արեւելք Երասխի ձախ ափին երկայնքին՝ կը հասնի մինչեւ Ախուրեան–Երասխ

[35] Ruy Gonzalez de Clavijo, Historia del gran Tamerlan, e itinerario, Seville, 1583. Անգլերէն թարգմ. Embassy to Temerlane, 1403—1406, trans. from the Spanish by Guy Le Strange with an Introduction, London, 1928. Հայերէն թարգմ. Յ. Յակոբեան, Ուղեգրութիւններ, հատոր Ա. Երեւան 1932, էջ 63—146, հանդերձ ծանօթութիւններով:

[36] Felix de Beaujour, Voyage Militaire dans l'Empire Othoman, Tome II. Paris 1892 p. 89. La route de la Perse se dirige à l'est, et côtoyant l'Araxe sur sa rive gauche jusqu'à son confluent avec l'Harpazous, vers le fort de Bairamlou, elle s'élève par le monastère de l'Ekmiazin jus'qua la forteresse d'Erivan, ou bien laissant à gauche cette forteresse. elle va passer le Zirma vers les ruines d'Artaxate, et descend avec l'Araxe jusqu'au fort d'Abas-Abad, audessous de Nakchivan etc.

խառնուրդը՝ Բայրամլու բերդը եւ ապա Էջ-
միածին–Երեւան–Պարսկաստան։ Կլավիխոյ Երզրումէն Սամարղանդ ուղեւորութեան այս վերջին ուղին ընտրած է գէթ մինչեւ Բայրամլու–Կոզը եւ ապա Իգդիր–Բայազիդ–Մակու։ Վերադարձին կտրած է Խոյ–Դիադին–Ալաշկերտ–Հասանկալէ գիծը։

Կլաւիխոյի գործին Հայաստանի վերաբերուած մասերը թարգմանուած են Յ. Յակոբեանի կողմէ «Աղբիւրներ Հայաստանի եւ Անդրկովկասի Պատմութեան, Ուղեգրութիւններ Ա. հատորի մէջ, Երեւան 1932, էջ 65—146։ Յառաջ կը բերենք մեր նիւթին հայող կտորները։

«Յաջորդ օրը Հինգշաբթի մայիսի 22ին մեկնելով Երզրումից, մենք գիշերեցինք Պարթիր Ջաւան (Partir Javan) գիւղում, որ գտնւում է Աւնիկ քաղաքի սահմանում[37]։

---

[37] Թէ Le Strange եւ թէ Յ. Յակոբեան իրենց ծանօթագրութիւններու մէջ (անդ, էջ 118) Պարթիր Ջաւան կը նոյնացնեն Հասանկալէի հետ, այն պատճառաբանութեամբ թէ Թուրքերը զայն կոչած են Ջիւան կալէսի։ Սակայն այս առթիւ ընաւ նկատի չեն առներ Կլաւիխոյի ուղեգիծին նկարագրութիւնն ու ընթացքը, ուսկից յայտնապէս կը տեսնուի թէ Կլաւիխոյ Հասանկալէն կոչած է միշտ Աւնիկ, հետեւաբար Պարթիր Ջաւան գիւղը պէտք է այլուր որոնել։ Եւ քանի որ նշանաւոր ուղեգրին համեմատ այս գիւղը Աւնիկի սահմանում գտնւում է, մեզ կը թուի թէ այդ անուան ամենամերձաւոր հնչիւնը կը ներկայացնէ արդի Պատիճվան կամ Պատիժվան գիւղը, որ իրապէս Հասանկալէ քաղաքին սահմանում կը գտնուի եւ Կարաւանի ճանապարհին վրայ Բէօփրիւ–քէօյի մօտերը, Հասանկալէէն հազիւ մի քանի մղոն հեռու։

Այս վերջինը մի շատ զօրաւոր վայր է, ունենալով իր յատուկ կառավարիչը որովհետեւ դա Հայերի ձեռքումն է, բայց շրջակայ հողամասերը պատկանում են մի Զաղաթա ազնուականի, որի անունն է Դուլաղէյ Բեկ (որի մասին պիտի խօսենք վերջէն): Ուրբաթ օրը մենք եկանք մի գիւղ Իսչու (Ischu) [38] կոչուած, մենք այստեղ մնացինք այդ գիշեր, ինչպէս նաեւ ամբողջ շաբաթ օրը. գիւղացիները Հայեր էին: Կիրակի շարունակելով հասանք մի տեղ Դելիլերքենդ [39]

---

[38] Յակոբեան (անդ, էջ 119) կը կարդայ Իսչու, եւ կը նոյնացնէ Իլիջայի հետ «տաք հանքային ջուր, որ գտնւում է այդ մասերում»: Համբաւաւոր Իլիջան կարնոյ արեւմտեան կողմն է. ամէն պարագային Յակոբեան դայն իր աչքին առջեւ չունի, սակայն այս անունով յատուկ տեղւոյ անուն մը Բասենի մէջ մեզ ծանօթ չէ: Քէօփրիւքէօյի մօտակայքը թէեւ կը գտնուի հանքային ջուր մը, սակայն չենք կարող ոչ հնչական տեսակէտէ եւ ոչ ալ աշխարհագրօրէն միացնել Կլաւիխոյի Իսչուին հետ: Վերջինս ըստ Ուղեգրին Գատիճվանէն միօրեայ հեռաւորութիւն մը պիտի ունենայ, ուստի հաւանաբար արդի Ազարի մօտերը պէտք է գտնուի: Ալիշանի համեմատ Ազարի մօտ կայ (Հմմտէ Այրարատ, էջ 32) Իսղի-սու գետակ մը եւ գիւղ մը:

[39] Սարանջ եւ Յակոբեան (անդ էջ 119) հրատարակած արտաքին նմանութենէն Դելի-Բաբայի եւ Դելիլերքենդի համարած են նոյն: Սակայն վերջինս ըստ նկարագրութեան Կլաւիխոյի պէտք է որ Երասխի ձախ ափին գտնուի, որովհետեւ Դելիլերքենդէ մեկնելէն յետոյ է որ առաջին անգամ Երասխ գետին կը հանդիպին ուղեւորները. «Մենք թողինք Դելիլերքենդը եւ գիշերեցինք բացօթեայ, հասած լինելով մի մեծ գետի եզերքը, որ կոչւում է Արագ (Արաքս)»: Դելի-Բաբա կը գտնուի Երասխի աջակողմը, ուր հասնելու համար անհրաժեշտ էր որ գետն անցնէին: Դելիլերքենդ հաւանաբար անհետացած է պատմութեան ասպարէզէն տեղի տալով նոր տեղանունի մը:

կոչուած, մի անուն՝ որ նշանակում է խենթերի գիւղ, որովհետեւ այս գիւղը բնակողները բոլորն էլ իսլամ հաւատքին պատկանող ճգնաւորներ են, որոնք այստեղ քաշիշ անունը ունին»: ... (Այս դերվիշներու նկարագրութիւնը կու տայ մանրամասն եւ ապա կը շարունակէ:)

«Մայիսի 26ին՝ Երկուշաբթի օրը, մենք թողինք Դելիլերքենդը եւ գիշերն անցուցինք բացօթեայ, հասած լինելով մի մեծ գետի եզերքը, որ կոչւում է Արագ (Արաքս): Սա մի վիթխարի գետ է, որ անցնում է գրեթէ ամբողջ Հայաստանից: Մեր ճանապարհն այդ օրը անցել էր կիրճերից եւ սարերում, որ ծածկուել էին ձիւնով, շատ գետակներ էին հոսում բարձունքներից: Յաջորդ Երեքշաբթի մենք գիշերեցինք մի գիւղում, որ կոչւում է Նաւ Ջուր (Նոր առուակ), եւ ամբողջ օրը մենք շարունակեցինք մեր ճանապարհը Արագ գետի եզերքից դէպի վար, ուղին լինելով դառիվեր եւ շատ քարքարոտ: Այս գիւղում մի քաշիշ (քահանայ) էր ապրում, որ մեզ պատուով ընդունեց, նա այդ վայրի տէրն էր, տեղի բնակիչների մեծագոյն մասը հայեր էին: Յաջորդ Չորեքշաբթի մենք գիշերեցինք մի գիւղում, ուր մի մեծ ամրոց կար ժայռի կատարին: Մենք նկատեցինք, որ լեռան ամբողջ կողքն աղ էր, եւ յիրաւի մի կէս օրուան ճանապարհը մենք անցնում էինք աղի բլուրների շղթայից: Հեռուից ու մօտից մարդիկ գալիս են աղատո-

ըէն առնելու իրենց աղը, օգտագործելով
այդ, եւ իրենց խոհանոցներում ուրիշ աղ չեն
գործածում:

Այժմ մենք պիտի նկարագրենք Սուր-
մարի (Սուրմալու), որը ինչպէս իմացանք
Ջրհեղեղից (յետոյ) շինուած առաջին քա-
ղաքն էր. այս վայրը մենք եկանք մայիս 29ին,
Հինգշաբթի կէսօրին: Շատ մեծ քաղաք է այս
եւ այստեղից մօտ վեց փարսախ հեռու նըշ-
մարւում է մեծ լեռը (Արարատ), որի վրայ
Ջրհեղեղին Նոյի տապանը նստեց...:

Յաջորդ Ուրբաթ օրը մենք թողինք Սուր-
մարի եւ ճամբորդելով եկանք մի մեծ ամրոց
շինուած մի ժայռի վրայ, ուր մենք պիտի
անցնենք գիշերը: ...տեղի անուն Իգդիր է:
...Յաջորդ օրը Շաբաթ, որ Մայիսի (31)
էր, մենք մեկնեցինք Իգդիրից եւ մեր ճանա-
պարհն ընթանում էր այն լեռան կողքից, որի
վրայ Նոյեան տապանը հանգչած էր: ...Այդ
միեւնոյն գիշերը մենք օթեւանեցինք մի բեր-
դում, որ կոչւում է Բայազիտ, որ կառու-
ցուած է մի բարձր ժայռի վրայ, որի տեսքը
հիանալի է»: Այստեղէն կը մեկնին Մակու-
Խոյ եւն: Իսկ վերադարձը տեղի կ'ունենայ
յաջորդ տարին 1405ին, Օգոստոս 22ին Թաւ-
րիզէն: «...Մենք ընկերացանք մօտ երկու-
հարիւր բեռնակիր ձիերի մի կարաւանի, որ
ապրանք էր տանում Թուրքերի երկրի հա-
մար, կարաւանի վերջին կայանը լինելով
Բրուսա»: Հետեւաբար սպանիացի պատգա-
մաւորները ուղին կ'ըլլար Կարաւանի սովո-

րական գիծը. Խոյ–Մակու–Բայազիդ են: Սակայն հազիւ թէ Խոյ հասած էին, կը լսեն թէ Կարա Յուսուփ «ոտնակոխ էր անում եւ կողոպտում Խոյի շրջակայ երկիրները...: Այս լուրը պատճառ դարձաւ որ մենք փոխենք մեր առաջադրած ճանապարհը, այսինքն այն ուղին, որից մենք եկել էինք, Խոյից գնալով դէպի Մակու: Սրա փոխարէն մենք դարձանք ճանապարհի ձախ կողմը, առնելով մի ուղղութիւն, որ գնում էր դէպի հարաւ (արեւմուտք): Այսպէս մենք Խոյը թողինք Երեքշաբթի երեկոյեան, ճամբորդելով ամբողջ գիշերը եւ յաջորդ օրը, Չորեքշաբթի, կանգ առինք մի մարգագետնում, բայց այնքան ժամանակ, որքան բաւական էր գարի տալու մեր ձիերին: Եւ ապա շարունակելով այդ կէսօրից յետոյ եւ գիշերը՝ Հինգշաբթի երեկոյեան մենք եկանք մի գիւղ, ուր մի փոքրիկ ամրոց կար, տեղի բնակիչները հայեր էին, որովհետեւ այս արդէն հայերի երկրումն էր, թէեւ նրանք հպատակ էին իշխան Օմարին: Այս գիւղից այն կողմ դէպի հարաւ սկսում է մի հողամաս, գրաւուած թրքական ցեղից մի խումբ ժողովրդի կողմից, եւ նրանց երկիրը կոչւում է Թուրքիստան...: Այստեղ հասնելիս լուր ստացանք թէ Կարա Յուսուֆը վերցրել է Արզինջանի պաշարումը եւ մեկնել այնտեղից, եւ նրա զինուորներն, ասացին, բռնել են այն ճանապարհը, որից մտադրել էինք անցնել յաջորդ օրը: Ուրեմն՝ մենք ուղարկեցինք

մեր մարդկանցից մէկին լրտեսելու ու տեսնելու, թէ իրաւի այդ կողմերն եկել էր արդէն այդ Թուրքմէն գլխաւորն եւ ուշ ժամանակ յաջորդ օրն այդ մարդը վերադարձաւ եւ ասաց թէ ճանապարհը բաց է։ Այժմ մենք անմիջապէս ճամբայ ելանք եւ այդ գիշերը իջեւանեցինք մի գիւղի մօտ դաշտերի մէջ. այդ ամբողջ օրուան ընթացքում մենք անցել էինք մի շարք բազմամարդ գիւղեր, բնակուած Հայերից։ Այս գիւղերից շատերում շատ գեղեցիկ եկեղեցիներ կային եւ նկատեցինք որ եկեղեցիների բակերի գերեզմանատներում շիրիմներ ու գերեզմանաքարեր զարդարուած էին խաչերով, մի մարդու հասակի չափ բարձր, շատ գեղեցկօրէն փորագրուած։ Երբ ճամբորդում էինք այս ճանապարհից, լուր ստացանք թէ Կարա Յուսուֆ մօտեցել էր եւ թէ նրա մարդիկը կողոպտում էին գիւղերը, ուստի մենք վերստին փոխեցինք մեր ուղին եւ դարձանք դէպի ձախը եւ մինչեւ կէսօր այս նոր ուղղութեամբ գնացինք, թէեւ մենք գիտէինք թէ որքան աւելի հեռու գնայինք այս ճանապարհից, այնքան պիտի շեղուէինք մեր ուղիղ ընթացքից։ Այնու ամենայնիւ յաջորդ կիրակի օրը ստիպուած էինք շարունակել, անցնելով բոլորովին անբնակ երկրից եւ Երկուշաբթի միեւնոյնն էր։ Հայաստանի այս մասում բնակչութեան բացակայութեան պատճառն այն է, որ քրիստոնեաները կորցրել են իրենց իշխանութիւնն ամբողջ Մեծ

Հայաստանում, քաղաքացիական կռիւների հետեւանքով, որ վերջերս տեղի է ունեցել արքայական երեք եղբայրների միջեւ: Երեքշաբթի օրը սեպտեմբեր 1-ն էր, առաւօտեան ժամը իննին մենք վերջապէս եկանք մի մեծ քաղաք, բայց այստեղ էլ աների մեծ մասը դատարկ էր բնակիչներից: Այս քաղաքի անունը Արաչկերտ էր: Քաղաքի պարիսպները, որ եղել էին շատ լայն եւ ամուր, բոլորը աւերակ էին, եւ քարից կառուցուած ամրոցը բոլորովին բաց էր, ճեղքուած շատ տեղերից, թէեւ մի քանի խեղճ մարդիկ ապրում էին նրա սենեակներում եւ տակաւին ամբողջ քաղաքում տեսնում էին շատ գեղեցիկ շէնքեր, որովհետեւ ամեն տեղ աները լաւ կառուցուած էին»:

Այնուհետեւ կը պատմէ Կլաւիխոյ թէ՝ «Ինչպէս էր եղել որ այս մեծ վայրն այսպէս աւերակ էր դարձել եւ մնում էր այսպէս: Այս մեծ Հայաստանի երկրում նախապէս եղել է մի նշանաւոր ու հզօր թագաւոր, ամբողջ երկրի իշխանը, որ իր մահուան ժամանակ թողել էր երեք որդի, եւ իր կտակով նա Հայաստանը բաժանել էր երեքի միջեւ այս եղանակով. իր աւագ որդուն նա թողել էր այս Արաչկերտ քաղաքը, շրջակայ երկիրներով. երկրորդ որդուն նա թողել էր Աւմիան (Aumian, թարգմանիչները նոյնացնելով անունս Հայ նշանաւոր Անիին հետ, Յակոբեան փոխանակ բնագրին Աւմիան անուան միշտ Անի կը գործածէ, մեր յառաջբերութեան մէջ

մենք բնագիրը նկատի ունեցած ենք) քաղաքը իր նահանգով, եւ իր երրորդ որդուն՝ Երզրումը: Այս վերոյիշեալ քաղաքները Հայաստանի երեք գլխաւոր քաղաքներն էին: Աւագ որդին տեսնելով թէ ինք տիրացել է Ալաշկերտին, երկրի ամենազօրաւոր տեղին, փորձեց զրկել իր երկու եղբայրներին իրենց ժառանգութիւնից եւ կռիւ սկսաւ երեքի միջեւ»: Արդիւնքը կ'ըլլայ երեք քաղաքներու ալ աւերումը իրենց թիւրքմէն դաշնակիցներու կողմէ եւ սպանութիւնը երեք եղբայրներու: «Այսպէս էր որ խալմներ եկել գրաւել էին ամբողջ Հայաստանը...»:

«Այսպէս երբ մենք եկանք Ալաշկերտ, ստոյգ տեղեկութիւն ստացանք թէ թուրքմէն Կարա Յուսուֆ ինքը եւ իր ամբողջ հրոսակները նոյն այդ ճանապարհի վրայ էին, որ մենք առաջադրած էինք անցնելու, ուրեմն մենք վերստին փոխեցինք մեր ծրագիրը եւ որոշեցինք յետ դառնալ եւ երթալ ուղիղ դէպի Աւմիան, եւ բախտաւոր էինք մենք որ այդպէս արինք: Այս մտադրութեամբ թողնելով Ալաշկերտը մենք ճանապարհորդեցինք չորս օր ու չորս գիշեր անբնակ ամայի մի շրջանից, եւ վերջապէս Ծաբաթ օրը սեպտեմբեր 5ին ապահով կերպով հասանք Աւմիան քաղաքը: Ապա յաջորդ Երկուշաբթի գնացինք վերեւ, Աւմիան բերդը, մեր յարգանքները մատուցանելու կառավարչին: Նա որդին էր այն Զադաթայ ազնուականին (որի մասին յիշատակած ենք մեր

առաջին ճամբորդութեան մէջ), եւ որ կոչւում էր Դուլադայ Բեկ, որին Թիմուրը վստահած էր Աւնիկի հողամասի իշխանութիւնը, երբ նա գրաւել էր: Աւմխանի ներկայ կառավարիչը՝ Դուլադայ բեկի որդին, այստեղ էր մնում որպէս իր հօր տեղակալ. եւ ներկայանալով նրան մենք որպէս նուէր մատուցինք մի պատմուճան ոսկեայ դիպակ, ինչպէս սովորութիւն է անել...: Նա մեզ վստահացրեց, թէ Կարա Յուսուֆը տակաւին գտնւում էր Արզինջանի երկրում, իսկ նրա մարդիկը գրաւել էին այն ճանապարհը, որ տեղից մենք մտադիր էինք անցնելու, եւ թէ նրանք կողոպտում էին այն՝ գիւղերը: Այսպէս լինելով, մենք պէտք էր որ գնայինք մի ուրիշ ճանապարհով...: Աւմխան բերդը շատ զօրաւոր մի վայր էր, մի բարձունքի վրայ, շրջապատուած երեք համակենդրոն պարիսպով, զօրաւորապէս կառուցուած: Բերդի գաւթում առատ ջրի մի աղբիւր կար եւ պաշտպանութեան համար առատ պաշար ու բոլոր միջոցները լաւ հայթայթուած էին»:

«Ուրեմն սեպտեմբերի 8ին, Երեքշաբթի թողինք Աւմխան, առաջնորդութեամբ մի Ջաղաթայ թաթարի, որին կառավարիչը յանձնարարել էր ապահով կերպով մեզ տանելու Վրաստանի սահմաններից դուրս, եւ այս առաջադրութեամբ թողինք Արզինջան տանող ուղիղ ճանապարհը, որ գնում է ձախ կողմից, եւ որի մի մասը մենք

անցել էինք մեր նախորդ ճանապարհորդութեան: Այդ գիշեր մենք օթեվանեցինք մի գիւղում, որ պատկանում էր Ամիանի կառավարչին, եւ յաջորդ օրը արշալոյսին մենք սկսանք բարձրանալ մի ցից լեռ, անցանք մի կատարից եւ միւս կողմում եկանք մի ամրոց, որ կառուցուած էր մի բարձր ժայռի վրայ, որի անունը Թարթում (Թորթում) էր» (էջ 136—141):

Ինչպէս վերը յիշեցինք Le Strange եւ Յ. Յակոբեան Aumianի արտաքին առ երեւոյթ դայգն նմանութենէն համարած են, թէ Կլաւիխոյ հայ Անին մատնանշած է անով, սակայն ուշադիր ընթերցումն այն նկարագրութեան, զոր նշանաւոր ուղեգիրը մեզ կու տայ իրենց ուղեգծին մասին, բոլորովին տարբեր եզրակացութեան մը մեզ կ'առաջնորդէ. թէ մենք գործ չունինք բնաւ Հայաստանի Անի քաղաքին հետ, որ շատ հիւսիս, եւ ուղեգծերէ մեկուսի կը գտնուի:

1. Ամիանէ մեկնելու առթիւ ուղեգծին մասին նկարագրութիւնը՝ թէ ճանապարհն երկու ուղղութիւն կը ստանար անոր մօտ, մին դէպի ձախ որ ուղիղ Արզինջան գնում էր, եւ միւսն աջ, ուսկից իրենք Թորթում կը հասնին յաջորդ օրը, միայն ու միայն Հասանկալէի գիրքին կը համապատասխանէ, ուսկից իրապէս երկու ճանապարհներ կ'երկճիւղին մին ձախ՝ ուղիղ դէպի Երզրում-Երզնկա-Տրապիզոն, իսկ միւսն աջ՝ Դու-

Հինձք—Կարմիր վանք—Խնձորեկ—Թարթում—Սպեր են։

2. Բերդին նկարագրութիւնն ըստ ամենայնի կը համապատասխանէ Հասանկալէի, եւ ոչ երբեք Անի քաղաքին եւ անոր միջնաբերդին։ Ամիան ամրոցն ինչպէս Հասանկալէն, կը գտնուի «Մի բարձունքի վրայ, շրջապատուած երեք համակենդրոն պարսպով. բերդի գաւթում առատ ջրի մի աղբիւր կար» (տես վերը էջ 68)։

3. Կլաւիխոն իր առաջին ճանապարհորդութեան ժամանակ այս վայրը կը կոչէր Աւնիկ, որուն կառավարիչն էր Դուլադայ Բեկ, եւ որու մասին կը խոստանար վերադարձին աւելի մանրամասն անդրադառնալ. արդ այժմ իր խոստումը կը կատարէ, նոյն տեղւոյ մասին տալով անդրագոյն տեղեկութիւններ, սակայն այժմեան բնագրին մէջ այդ վայրը փոխանակ Աւնիկի Ամիան անուանուած է։ Ուղի՞ղ պահուած է սկզբնագիրը։ Բնականաբար ո՛չ է մեր պատասխանը։ Կլաւիխոյ վերադարձին իբր կառավարիչ ամրոցին՝ կը գտնէ Դուլադայի որդին իբր տեղակալ։

Միւս կողմէ Շերեֆեդդինէն մեզ ծանօթ է թէ ճիշդ այդ տարւոյն եւ այդ ժամանակ Դուլադայ Աւնիկի կառավարիչը կը գտնուէր Նախիջեւան կամ Հիւսիսային Պարսկաստան (տես ստ., էջ 95)։ Ուստի այս բոլորէն յայտնապէս կը տեսնուի թէ Ամիան պարզապէս սխալագրութիւն մըն է,

հաւանաբար յետնագոյն ընդօրինակողներու կողմէ կատարուած, ուրիշ ձեւն ու գրութիւնն է Աւնիկ: Եւ այսպէս կ'ունենանք Կլաւիխոյէն նկարագրուած ճշգրիտ գիրքն Հասանկալէի, Աւնիկ անունով: Աւմիան = Անիկի հարկագրական սրբագրութենէն յետոյ կարելի է համառօտիւ գծել այն ուղիները, զոր սպանիացի պատգամաւորները կտրած են Հայաստանի մէջէն: Երզրումէն կը մեկնին դէպի Բասեն եւ Անիկ-Հասանկալէի մօտէն անցնելով կու գան Պարթիր-Ջաւան՝ այսինքն արդի Պասինճյան գիւղը: Այնուհետեւ անոնց ճանապարհը կ'ընթանայ Երասխի ձախ կողմի արքունի ճանապարհով Ազար-Խորասան-Մժնկերտ-Կարակուրտ եւ հաւանաբար այստեղ է որ առաջին անգամ Երասխ գետը տեսնելու առիթը կ'ունենան եւ միանգամայն յիշատակելու, եւ ապա Կաղզուանի վրայէն կ'անցնին Կողբ-Իգդիր-Բայազիդ-Մակու եւն: Իսկ վերադարձին թէեւ կը փափագին միեւնոյն ուղին ընտրել, սակայն կը ստիպուին Խոյի մօտ հարաւարեւմուտ ուղղուիլ դէպի Անձախիձոր կամ Կոտոր գետի հովիտը եւ այդ ճանապարհով կու գան Արաղայի դաշտն եւ Դիադին, ուր կը թուի թէ փորձած են դէպի հիւսիս Երասխահովիտն անցնիլ, սակայն կրկին կը բռնադատուին ձախ դառնալ եւ Բագրեւանդի դաշտը կտրելով վերջապէս կը հասնին Ալաշկերտ քաղաքը: Ուսկից կարելի էր կամ Կաղզուանի եւ կամ կարաւանի սովորական ճա-

նապարհով երթալ Հասանկալէ: Վերջին պարագային հարկ էր կրկին կարաւանի գիծը վերադառնալ: Արդէն այս կէտը կը շեշտուի Կլաւիխոյի մօտ, ուստի Արաշկերտէն կարաւանի կողմնակի մէկ ուղիով մը անցած են Անիկ–Հասանկալէ: Այս կրկին ուղեգիծերն ալ մեզ կը տանին նոյն արդիւնքին՝ Հասանկալէ–Անիկ նոյնութեան:

Կլաւիխոյէն երեք դար առաջ Արիստակէս Լաստիվերտցի պահած է մեզի թանկագին տեղեկութիւն մը Անիկ–Հասանկալէի նոյնութեան համար իր ողբասաց Պատմութեան մէջ, ուր նա պատմելով Տուղրիլ Սուլտանի աւերումներու մասին զանազան գաւառներու մէջ, մեզի կ՚ընձեռէ հետեւեալ հետաքրքրական տեղիքը: Տուղրիլ Վանանդ գաւառն աւերելէն յետոյ կը վերցնէ նոյնպէս պաշարումը Մանազկերտի: «Յետ երից աւուրց չարժեալ ամենայն բանակաւն, խաղայ իջանէ ի Տուարածոյ տափ եւ անտի իջանէ յընդարձակ դաշտն Բասենոյ առ անուն ամրոցաւն, որ կոչի Անիկ, յորում ետես աշխարհաժողով մարդոյ եւ անասնոյ, եւ ոչինչ փոյթ արար. քանզի ի հայելոյն միայն ծանեաւ թէ անառ է. եւ անցեալ առ նովաւ գայ ի գլուխն Բասենոյ, մերձ ի գեօղն՝ որ կոչի Դու: Եւ եկեալ անտի սակաւ արամբք յանդէտս ի վերայ գահին, որ հայի ի Կարին, ետես զքաղաքն փառեալ ամենայն պատրաստութեամբ եւ նայեցեալ յերկար ժամս՝

դարձաւ անդրէն» (Պատմութիւն, Վենետիկ 1901, էջ 80)։

Որքան ալ այս վկայութիւնը պարզ է եւ յայտնի կը տեսնուի Հասանկալէ-Անիկի նոյնութիւնը, սակայն աւելի ստոյգ գործելու համար հարկ է Տուղրիլի արշաւանքի ուղին որոշել։

Մանազկերտէն Բասեն երթալու համար երկու ուղիներ կարելի է նկատի ունենալ. մին՝ Մանազկերտ-Խնուս-Կիւլլի-Հասանկալէ, երկրորդը՝ Մանազկերտ-Արածանի հովիտը՝ գետն ի վեր Ալաշկերտ-Դեղիբաբա-Քէօփրիւքէօյ-Հասանկալէ։ Առաջին ուղին զինուորական արշաւանքի մը համար ոչ մի յարմարութիւն ունի[40]։ Ուրեմն Տուղրիլ միայն երկրորդ գիծը կրնար ընտրել։ Եւ թէ իրապէս այս ուղին կտրած է Տուղրիլ,

[40] Համեմատէ C. F. Lehmann Haupt, Armenien Einst und Jetzt, II. 2, Berlin 1931, S. 769. „Karbe, der die Nordostrichtung vom Teleboas ab richtig erkannt, aber die Durchfurtung des Euphrat irrigerweise schon bei Melasgert angesetzt hatte, durfte immerhin noch annehmen, daß zur Winterszeit der Weg östlich am Bingöl Dagh vorbei für eine Heeresmasse gangbar gewesen sei. Inzwischen aber haben die Ermittlungen, die Belck in der mit dem Durchzug der Griechen gleichen Jahreszeit gewonnen hat, dies als unmöglich erwiesen, und unabhängig von ihm hat v. Hofmeister (Durch Armenien und der Zug Xenophons, Leipzig 1911, S. 237) sehr richtig erklärt, er könne sich nicht denken, „daß ein General seine mit Troß an 15 bis 20 tausend Mann starke Truppe durch tiefen Schnee an den Fuß eines zur Winterszeit nahezu unübersteiglichen Gebirgsstockes, wie des Bingöl-Dagh, führt, um dann fast rückwärts denselben zu umgehen und über immerhin beschwerliche Pässe den Marsch fortzusetzen“.

յայտնի եւ ստոյգ կը հաստատուի Տուարածատափի յիշատակութեամբ: «Իջանէ ի Տուարածոյ տափ»:

Ո՞ւր կը գտնուի այս վայրը:

Ալիշանի[41] համեմատ «Կէօքսու-Գարաւազ» ըլլալու է Տուարածատափ: Հայկունի[42] կը նոյնացնէ Անգղի գաւառի հետ. «Ըստ իմ կարծեաց Տուարածատափ այժմեան Անգղի գաւառակն է, որ Ալաշկերտի մէճակի հարաւն եւ Մանազկերտի հիւսին կ'ընկնի» (Բագրեւանդ, էջ 7, ծն. 1): Իսկ էջ 303, ուր առանձնապէս Անգղի գաւառի վրայ կը խօսի, նոյնպէս կ'աւելցնէ՝ ԱՆԴԻԱՓ (Տուարածատափ) Պայազիտի կառավարութեան բաժանումներէն մին է. Անգղի ըստ իս Տուարածատափ. իսկ Թիւ 1 ծն. մէջ կը յայտնէ հետեւեալ կարծիքը. «Տուարածատափ լինելու է այս վայրը, որ ոմանք Խալեազը կը կարծեն, ըստ իս Խալեազը Գաբեղեանքը կամ կարելի է Տուարածատափի մի մասն համարել, վասն զի Անգղու լեռներն տարածուած են մեծաւ մասամբ ի Խալեազ»:

Հիւբշման կը զետեղէ զայն իր աշխարհագրութեան վրայ ընդ մէջ Ակդաղի եւ Կարաւազի: Իսկ Մանանդեան[43] նկատի առնելով Ղազար Փարպեցու այն վկայութիւնը,

---

[41] Այրարատ, էջ 540:

[42] Ս. Հայկունի, Բագրեւանդ Ջրարաշխ Գաւառ, Էջմիածին 1894:

[43] Յ. Մանանդեան, Հին Հայաստանի գլխաւոր ճանապարհները, Երեւան 1936:

ուր նա կը պատմէ Վարդանի որոշումը Յունահայաստան անցնելու՝ «Եւ եկեալ հասանէին ի գիւղ մի, որոյ անունն էր Արմանայ, ի նահանգին Բագրաւանդայ, մերձակայ սահմանակից Բասենոյ եւ Տուարածատափու, ուր եւ սակաւ ինչ աւուրս կամեցեալ հանգչել, եւ զուշ եղեալ ճանապարհն գնալ պատրաստէին սախրով» (Պատմ., Տփղիս 1904, էջ 57), կ'եզրակացնէ. «Փարպեցու այս վկայութիւնից պարզ երեւում է, որ Արմանայ գիւղը գտնուել է այն հին ճանապարհի վրայ, որը Հայկական Պար կամ Աղրի-դաղ լեռների հարաւային կողմերով գնում էր Յունահայաստան: Փարպեցու վկայութեան մէջ կարեւոր է նաեւ այն, որ Արմանայ գիւղի տեղը ցոյց է տրուած Բագրեւանդ գաւառի արեւմտեան ծայրում, Բասենի եւ Տուարածատափի սահմանների մօտ»:

«Արդ ի նկատի առնելով Փարպեցու, ինչպէս եւ Պեւտինգերեան քարտէզի ցուցմունքները՝ դժուար չէ եզրակացնել, որ Armanas—Արմանայի տեղը լինելու էր այժմեան Խալեապում եւ Շեւեան գետի ձախ կողմում՝ Chadas —Խաստուրից դէպի հիւսիսարեւմուտք գնացող մեծ ճանապարհի շրջակայքում: Բացի այդ, նոյն աղբիւրների վկայութիւնից պարզ ու որոշ հետեւում է, որ հին Տուարածատափը գտնուել է ոչ թէ այժմեան Անդափում, ինչպէս Հայկունին ենթադրել է (Բագրեւանդ, էջ 303), այլ այժմեան Շեւեան լեռների եւ Մերգեմերի լեռ-

նացքի հարաւային կողմերում» (էջ 53—54)։

Մանանդեան իր այս կարծիքն հաստատելու համար վկայութեան կը կոչէ նաեւ Լաստիվերտցու վերոյիշեալ տեղիքը. «Նկարագրելով Տուղրուլ սուլտանի արշաւանքը Մանազկերտից դէպի Բասեն՝ Լաստիվերտցին եւս վկայում է, որ Տուարածատափի տեղը գտնուել է Բասենից եւ Աւնիկ ամրոցից դէպի հարաւ-արեւելք, այսինքն՝ վերոյիշեալ Ծեւեան լեռների հարաւային կողմերում» (էջ 54)։

Լաստիվերտցու տեղիքէն այսպիսի եզրակացութիւն մը հանել շատ բռնազբօսիկ կը թուի մեզ, այս պատճառաւ ընդգծուած նախադասութիւնն ոչ մի կերպով իրականութեան եւ ոչ ալ վկայութեան բնական իմաստին կը համապատասխանէ։ Մանանդեան այս մեկնութիւնը տուած ժամանակ աչքի առաջ ունեցած է, ինչպէս կը թուի, այժմեան Աւնիկի դիրքն ու վայրը եւ ոչ թէ Արիստակէսի պայծառ տեղիքը, ուր պատմագիրը բացորոշ կը գրէ՝ «Խաղայ իջանէ ի Տուարածոյ տափ, եւ անտի իջանէ յընդարձակ դաշտն Բասենոյ առ անառ ամրոցաւն որ կոչի Աւնիկ»։ Արիստակէսի Աւնիկ ամրոցը կը գտնուի Բասենի ընդարձակ դաշտին մէջ. եւ այս պատճառաւ է որ Տուղրիլ ստիպուած էր նախ իջնել Տուարածատափ եւ ապա Բասենի դաշտը, եւ դալով բերդին ստորոտը կը տեսնէ Աշխարհաժողով մարդոյ եւ անանոյ ամրոցին մէջ եւ համոզուելով թէ անա—

ուր է նա. «Անցեալ առ Նովաւ գայ ի գլուխն Բասենոյ, մերձ ի գեօղն՝ որ կոչի Դու»: Մինչդեռ այժմեան Անիկի գիրքը ոչ մի կերպով կրնայ համապատասխանել պատմագրին նկարագրութեան: Նա կը մնայ բոլորովին մեկուսի նախ կարաւանի ուղիէն, երկրորդ Բասենի դաշտին մէջ չի գտնուիր, այլ լեռներու մէջ, եւ երրորդ չէ կարելի մեկնել Արիստակէսի «Անցեալ առ Նովաւ գայ ի գլուխն Բասենոյ», բացատրութիւնը, որմէ կ՚ենթադրուի թէ Անիկ եւ Գլուխ Բասենոյ, այսինքն Դու գիւղն իրարու մերձ ըլլալու են: Մանանդեանի կարծիքով Տուղրիլ կը մտնէ Տուարածատափ ապա Անիկ եւ յետոյ Բասենի դաշտը եւ ամէնէն վերջ Դու գիւղը: Սակայն Լաստիվերտցու տեղիքին պարզ ընթերցումն իսկ բաւական է մեզ համոզելու թէ այսպիսի մեկնութիւն մը ոչ մէկ կերպով կը համապատասխանէ բնագրին, ուր յայտնի կը տեսնուի հետեւեալ աշխարհագրական կարգը. Բագրեւանդ Տուարածատափ–Բասենի դաշտ–Անիկ–Գլուխ Բասենոյ՝ Դու գիւղը:

Ուստի հիմնուած այդ վերոյիշեալ աղբիւրներու վկայութիւններու վրայ ստիպուած ենք սխալ նկատել ոչ միայն Ալիշանի, Հիւբշմանի եւ Հայկունիի կարծիքները, այլ նաեւ Մանանդեանի տեղադրութիւնը Տուարածատափի մասին:

Ղազար Փարպեցի Արամանայ գիւղը սահմանակից եւ մերձակայ կը դնէ Բասենի եւ Տուարածատափի: Եւ որովհետեւ Մար–

կուարտի[44] եւ Մանանդեանի հետազօտութիւններու շնորհիւ գիտենք թէ Արամանայ գիւղը Պեւտինգերեան քարտէզի Armanas կայանին հետ նոյն է, որ Chadas-Խաստուր կայանէն դէպի արեւմուտք այժմեան Խալեազ լեռնադաշտի եւ Բասենի սահմանին՝ 25 մղոն հեռաւորութեամբ, Կարաւանի ճանապարհին վրայ գտնուելու էր, հաւանաբար այժմեան Տաղար (ըստ Հայկունիի Դահար) գիւղի մօտերը, եւ միւս կողմանէ որովհետեւ Լաստիվերացիէն յայտնի է թէ Տուղրիլ Բասենի դաշտը մանելու համար ստիպուած էր Տուարածատափ իջնել, ուրեմն հարկ է ընդունիլ թէ Տուարածատափ գտնուելու է այնպիսի վայր մը, ուսկից անցնելու էր Բասենի ճանապարհը: Ալիշանի, Հիւբշմանի եւ նաեւ Մանանդեանի տեղագրութիւնները Տուարածատափի մասին այդ հնարաւորութիւնը մեզ չեն ընձեռեր, այն վայրերու մէջէն միայն արահետներ կ՚անցնին, որոնք ստուարաթիւ բանակներու երթեւեկի ոչ մի յարմարութիւն ունին: Ուստի որոնելու ենք վայր մը որ թէ մերձակայ եւ սահմանակից ըլլայ Արամանայ գիւղին եւ թէ անոր մէջէն անցնին զինուորական արշաւանքի յարմար ուղիներ դէպի Բասեն-Երզրում են: Այդպիսի վայր մը կը թուի մեզ այժմեան Խալեազի լեռնադաշտը, որուն մանրամասն նկարագրութիւնը տուած է Ս. Հայկունի, որմէ յառաջ

---

[44] J. Marquart, Le Berceau des Arméniens. Revue des Etudes Arméniennes, Tome VIII, Fasc. 1, Paris

կը բերենք մի քանի տեղագրական կէտեր:

«Խալեաթ ըստ քրդաց կը նշանակէ անխնամ ձգուած կամ անմարդաբնակ դաշտ, որ Բագրեւանդայ արեւմտեան ծայրն Ալաշկերտի, Բասենի եւ Խնուսի միջավայրն բարձր դիրք մի գրաւած է. նաեւ ի Հարաւոյ մասնաւոր ինչ Մանազկերտի եւ Անդափի սահմաններն ունի»:

«Խալեաթ 8—9 ժամ երկարութիւն (յարեւմուտս) եւ 4—5 ժամ լայնութիւն ունի (ի հարաւ)»:

«Ի հիւսիս յարեւելից սահմանակից է Զաթ լերան, որոյ մի երեսից Զաթ անուն ջուր մի կը բխի, կը հոսի հարաւ յարեւելս, Ձեռկան գետ անուն առնելով դաշտի մէջ Ծեռեան, ուստի Մուրատ կը հոսի, իսկ Զաթայ միւս կողմէն եւս մի ջուր կը հոսի Իկտերու անունով, յարեւմուտս կ'ընթանայ յԵրասխ կը թափի: Հիւսիսային կողմէ Դրամ եւ Ղզըլ լեռներու սահմանակից է Խալեաթ»:

«Խալեաթ լեռնադաշտ մի է չուրջը պատած հարիւրաւոր գեղեցիկ լեռնահովիտներով որոյ ամէն կողմերն մեծ ու փոքր լեռներ են, որոյ միջավայրն եւս հազարաւոր մարգագետիններ եւ բիւրաւոր աղբիւրներ կան, որք զԾեռեան ջուր գետի փոխարկուելով ոլորումներով կը հոսի, թողլով երկու ափերու մերձ տափարակ վայրեր եւ 15ի չափ քրդ. գիւղօրայք»:

«Կարնէ յԱլաշկերտ մտնելու համար երեք ճանապարհ կ'անցնի Խալեաթի միջէն: 1. Հիւ-

սխալին ճանապարհն է որ Տէլիբաբայի կիրճն մանելէ յետոյ ձախ թեւի կողմ բաժանուած Ղզըլ Տէրպէնտով կը բարձրանանք Իկտեյու, ուստի Խալեացի հիւսիսով Զաթ եւ մի ժամ Զաթայ նեղ կրճէն անցնելով կը դառնանք Ալաշկերտի դաշտն ի վայր, դաշտի առաջին Մօլլա–Սիւլէյման գիւղն: Այս ճանապարհն թէեւ աւելի կարճ է Տէլի–բաբացւոց համար, սակայն աւազակաց երկիւղից միշտ բանուկ չէ: Երկրորդն է, որպէս գիտենք Դահարի ճանապարհն (այսինքն Կարաւանի սովորական ճանապարհը). երրորդն է Եազլի դաշի, որ նաեւ բանուկ վիճակի մէջ է: Այս ճանապարհներն որչափ որ երկիւղալի են, սակայն տարւոյն երեք եղանակներուն մէջ գործածելի կը դառնան իւրեանց յարմար ժամանակին: Խալեաց Դահար գիւղից յարեւելս Շեւեանի հովտին՝ իսկ Դահարից յարեւմուտս Երասխայ հովտին կը պատկանի» (Բագրեւանդ, էջ 75—76): Կարաւանի ճանապարհի մասին, որ Խալեացի մէջէն կ՚անցնի, համեմատէ անդ էջ 38—41:

Տուարածատափ գաւառի տեղագրութեամբ միանգամայն կ՚որոշուի Տուղրիլ սուլտանի արշաւանքի ուղին եւ նաեւ անուղղակի Անիկի դիրքը: Ուրեմն Տուղրիլ Մանազկերտէն ելլելով կու գայ Բագրեւանդ գաւառը, ուր ի մի հաւաքելով նաեւ իր՝ Վանանդ գաւառին մէջ՝ ասպատակող գումարտակները, կը մանէ Տուարածատափ–Խալեաց, եւ Դահարի գծով Դէլիբաբա–Քէօ-

փոխքէօյի ճանապարհով կը հասնի Բասենի ընդարձակ դաշտը եւ կը յառաջանայ Հասանկալէի–Անիկի սարոտը՝ պարիսպներու ներքեւ. եւ այդ տեղէն աջ կողմի ճանապարհով կ'ելլէ Բասենի Գլուխը՝ Դու գիւղը: Հակառակ ուղղութեամբ՝ Դու գիւղէն եկած էր վեց դար յառաջ Պարսից զօրավարը դէպի Բողբերդ, միասին բերելով Կամսարականներու տիկինները այդ ամուր բերդին մէջ արգելափակելու համար:

Արիստակէս Լաստիվերցիէն երկու դար առաջ Կոստանդին Ծիրանածին[45] կը յիշէ բազմաթիւ անգամ τὸ κάστρον τοῦ 'Αβνίκος Բասենի մէջ եւ այն յայտնապէս կը գտնէ Երասխի այս կողմը: Καὶ ἐπεὶ οὔτε ἐξ οἰκείας δυνάμεως τὴν Θεοδοσιούπολιν κατεστρέψατο οὔτε τὸ 'Αβνίκον οὔτε τὸ Μαστάτον, οὐκ ὀφείλει ταῦτα κατέχειν ὡς ὄντα ἔνθεν τοῦ Ἔραξ Ποταμοῦ ἤτοι τοῦ Φάσιδος, διότι τὸ μὲν κάστρον τοῦ 'Αβνίκου μέχρι τοῦ νῦν ἦν αὐτεξούσιον καὶ αὐτοδέσποτον, ἔχον ἴδιον ἀμηρᾶν, καὶ Πολλάκις ὁ λαός τῆς βασιλείας ἡμῶν ἐπραίδευσεν αὐτό. «Եւ որովհետեւ (Աշոտ Ներսեհ) իր զօրքով ոչ Թէոդոսուպոլիս կրցաւ գրաւել, ոչ Անիկն եւ ոչ Մաշտատ. եւ արդէն պէտք չէր գրաւել այն մասը, որ Երասխի կամ Փասիս գետի այս կողմը կը գտնուի, եւ որովհետեւ Անիկ բերդը մինչեւ այսօր ինքնակաց

[45] Constantinus Porphyrogenitus, De administrando Imperio, Corpus Scriptorum Historiae Byzantinae. Editio B. G. Niebuhrii. Bonnae 1840, p. 203

եւ ինքնիշխան եղած է եւ իր սեպհական պետն ունեցած է եւ յաճախ մեր ժողովուրդէն աւերումի ենթարկուած...»: (Համեմատէ նոյնպէս անդ գլ. ԽԵ, էջ 200, 202, 205): Այս վկայութեան համեմատ քանի որ Անիկ Երասխի այս կողմը կը գտնուի, ուրեմն կարելի չէ արդի Անիկի հետ նոյնացնել, որովհետեւ վերջինս Երասխի միւս կողմը՝ այսինքն արեւելեան մասին մէջ կը գտնուի: Զարմանալի է, որ թէ Ինճիճեան եւ թէ Ալիշան այս տեղիքին ծանօթ ըլլալով հանդերձ Կոստանդինի Անիկը կը նոյնացնեն արդի Անիկ ամրոցի աւերակին հետ: Եւ Ինճիճեան նոյն իսկ կ՚անդրադարձնէ Կոստանդինի տեղագրութեան մասին յառաջ բերելով՝ «Եւ ընդ յայսկոյս Երասխ գետոյ» բացատրութիւնը (Ստորագրութիւն, էջ 386):

«Աւճիկ» անունը կազմուած է Աւաճ-իկ նուազական ձեւէն: Մովսէս Խորենացւոյ[46] մօտ պահուած կը գտնենք Աւաճ Բասենոյ հասարակ ձեւը: Վաղարշ թագաւորին Ծննդեան վայրին մասին խօսելով՝ Խորագրին մէջ յառաջ կը բերէ այդ ձեւը. «Յաղագս թագաւորելոյն Վաղարշայ, եւ շինելոյ զԱւանն Բասենոյ եւ պատել պարսպաւ զնոր քաղաք, եւ պատերազմ ընդ Խազրաց եւ մահ նորին»: Իսկ բնագրին մէջ զայն կ՚անուանէ Վաղարշաւան. «Սա շինէ աւան մեծ զտեղի ծննդեան իւրոյ ի վերայ ճանապարհին. ուր ի գնալ մօր

45 Պատմութիւն Հայոց, Տփղիս 1913, էջ 199:

իւրոյ ի ձմերոց յԱյրարատ, յանկարծակի պատահեալ երկանց ի գնացն՝ ծնաւ ի վերայ ճանապարհին, ի գաւառին Բասենոյ, ի տեղւոջն, ուր խառնին Մուրց եւ Երասխ. զոր շինեաց յիւր անուն եւ կոչեաց Վաղարշաւան»: Մովսէս Խորենացւոյ այս վկայութեան վրայ հիմնուած մինչեւ այսօր առ հասարակ ընդունուած է թէ հին Վաղարշաւանն արդի Քէօփրիւքէօյն է. սակայն Մովսէսի Խորագիրը եւ Նախորդ վկայութիւնները յայտնապէս կը ցուցնեն թէ Աւան Բասենոյ բացատրութիւնը չէ կարելի Քէօփրիւքէօյի հետ հաշտեցնել, նկատի ունենալով վերջնոյս դիրքն ու վիճակը: Այդ բացատրութիւնը կ՚ենթադրէ կենդրոնական եւ գլխաւոր վայր մը, քաղաք մը Բասենի մէջ: Քէօփրիւքէօյ ոչ մի ժամանակ այդպիսի հանգամանք մը ունեցած է բովանդակ անցեալին մէջ եւ ոչ ալ այժմ: «Քէօփրիւքէօյ, ինչպէս Կ. Կոխ[47] կը վկայէ, ամենայետամնաց գիւղերէն մին է, անբան անասուններն իսկ իրենց անբանութեամբ աւելի յարմար բնակարաններ կը պատրաստեն իրենց համար քան բանաւոր արարածն այստեղ» (անդ, էջ 330): Հնութեան հետք դրեթէ չկայ կէս-ստորերկրեայ գիւղին մէջ: Կայ միայն կիսափուլ իջեւան մը, որ հաւանաբար շատ մեծ հնութիւն մը չունի: Նոյն իսկ այն նշանաւոր կամուրջը,

---

[47] K. Koch, Reise im Pontischen Gebirge und Türkischen Armenien, Weimar 1846.

որմէ գիւղն իր յորջորջումն ստացած է եւ որ ան հասարակ բոլոր ուղեգիրներէ հնագոյն շրջանի կամ գենուական վաճառականներու գործ կը համարուի, շնորհիւ Գրիգոր Դարանաղցիի[48] վկայութեան, հնութիւն մը չի ներկայացներ: Ան շինուած է Կարապետ վարդապետ Գոմերցիի կողմէ: «Եւ մեր Դարանաղեաց երկիրս Կամախոյ վանորէից ի մօտահաս ժամանակիս ոչ ոք ի վարդապետայ եղեալն կամ տեսեալ՝ չիք մեր լուեալ կամ տեսեալ երբեք, բայց միայն Կարապետ անուն վարդապետ մի Գոմերցի ի Ջորեհանդստի Լուսաւորչի վանացէն, որ մականուն Յալաֆ ասէին: Նա կու յիշուէր ի մեր ժամանակին, ոչ վասն մեծահանճար իմաստութեան եւ գիտնականութեանն կամ գործնական առաքինութեանն, որ շատ վարժ եւ կիրթ չէ եղեալ ի գրոց եւ ոչ մեկնութիւն ասել դասն, բայց միայն քարոզասաց եղել է ի նսեմ խաւարեալ ժամանակին, որ ճշմարիտ վարդապետք նուազեալ եւ վերջացեալ էին ի մեր Կամախէն եւ ամենայն գիւղք եւ քաղաք ի շինութեան եւ ի խաղաղութեան գոլով, որպէս յաւուրս Մօրկայ: Նա հանապազ շրջելով սա ի վերայ ամենայն մօտահաս գաւառացն եւ ի գործ ածելով զսակաւիկ գիտութիւնն իւր, զարծաթ բանին Տեառն պր-

---

[48] Գրիգոր Վարդապետի Կամախեցւոյ կամ Դարանաղցւոյ՝ Ժամանակագրութիւն, հրատ. Մ. Նշանեան. Երուսաղէմ 1915, էջ 402—403:

կանելով ի սեղանաւորս, այսինքն յոգւոջ մարդկան։ Եւ գինչ որ անկանէր պտուղ ողորմութեան գագելով յընչաւէտացն, ի նեղեալս եւ կարօտեալս բաշխէր եւ շատ եկեղեցիք աւերակք նորոգելով եւ պանդոկ՝ այսինքն խոնահկա եւ կամուրջ կապելով ի վերայ մեծամեծ գետոց եւ ի Թէոդուպոլիսն մէջիթ նորոգելով ի հնութենէ՝ հրամանաւ փաշային, որ եւ փաշային յոյժ հաճոյ թուեալ, մեծ քսակ մի գեղուն գանձս ոսկոյ եւ արծաթոյ տալով նմա՝ թէ որ ի Բասենոյ ի վեր Ջոպան քօփրուսի ասեն՝ չինէ զինքն եւ չինեալ է գնա, որպէս հրամայեր է փաշան եւ այսպիսի վարուք կացեալ աշխարհի եւ առ Աստուած փոխելով»։

Այն վայրը, զոր Խորենացի Թ. դարուն «Աւան Բասենոյ» կ'անուանէ, Է. դարուն Սեբէոս կը կոչուի «Բոլորապահակ»։ Ապա եկն Տամ Խոսրով եւ տայր երկու կոխս մի ի Բասեան ի Բոլորապահակի, ուր Մուրց եւ Երասխ խառնին (Պատմութիւն ի Հերակղ, էջ 53)։ Բոլորապահակ իր կազմութեամբ համազօր է Ղազարի Բողբերդին եւ Պրոկոպիոսի Բոլոն ամրոցին։ Բող կամ Բոլ — մաքուր արմատը կը ներկայացնէ Բոլոր բառին (տես Աճառեան, Արմ. Բառ., հտր. Է, էջ 106 Բոլոր բառի տակ[49])։ Շնորհիւ Սե-

[49] Աստ էջ 66 արդէն ակնարկեցինք թէ Ադոնցի մեկնութիւնն՝ իբր թէ «Բոլ կարող է պարսկերէն բառ լինել եւ պահուած պարս. բոլանդ–բարձր բառի մէջ», սխալ համեմատութիւն մըն է. որովհետեւ Բող ինչպէս

բէոսի Բոլորապահակի՝ վերահասու կ՚ըլլանք թէ այդ արմատը պահուած է ոչ միայն բուն ձեւով գաւառականներու մէջ, այլ նաեւ աշխարհագրական անուններու մէջ. այսպէս օրինակ Բող–բերդ, Բող–ա–չէն ի Սիւնիս (Օրբել., Պատմ., Տփղիս 1910, էջ 179), Բարձրա–բող կամ–բուղ (Եղիշէ, Պատմ., էջ 52) են: Իսկ թէ Պահակ՝ ծագած «Պարհակ» է, ամրոց, բերդ նշանակութիւնն ունի, բաւական է կարծեմ մի երկու վկայութիւններով հաստատել: Ա. Մնացորդաց հնագոյն թարգմանութեան մէջ (հրտ. Խալաթեանց, Մոսկուա 1899, էջ 34 եւ 35) կ՚ըսուի. «Եւ չինէր պարհակ ի Դամասկոս Ասորեստանեաց». դարձեալ՝ «Եւ անդ չինէր պարհակ եւ պարհակատունս». Երկրորդ թարգմանութիւնն ունի նոյն նախադասութիւնները հետեւեալ ձեւով. «Եւ եդ Դաւիթ ամրոց յԱսորիս ի Դամասկոսի». նոյնպէս՝ «Եւ եդ ի հովտին ամրոց եւ էին Եդոմայեցիք ծառայք Դաւթի»: Համեմատել նոյնպէս Ճորայ պահակ (Դերբենդ) բացատրութեան հետ են:

Ղազարի եւ Պրոկոպիոսի մօտ Բողբերդի եւ կամ Բոլոնի տեղւոյն մասին անդրադոյն տեղեկութիւններ կը պակսին, եւ այս պատճառաւ մինչեւ օրս անոր վայրն անորոշ մնացած էր: Սեբէոսի վկայութեան շնորհիւ կը

---

Սեբէոսի Բոլորապահակը կը ցուցնէ պարզապէս բոլոր բառի թանկագին արմատը կը կազմէ. հետեւաբար բնիկ հայերէն բառ մըն է:

տեղեկանանք թէ Բոլորապահակ, այլ խօսքով Բողբերդ, կը գտնուի այն տեղ, «Ուր Մուրց եւ Երասխ խառնին»։ Եւ որովհետեւ Մովսէս Խորենացի ճիշդ նոյն բացատրութեամբ կը բնորոշէ Աւան Բասենոյ եւ կամ Վաղարշաւան քաղաքի դիրքը. ուրեմն աներկեւան է թէ Բոլորապահակ եւ Աւան Բասենոյ նոյն են։ Եւ ինչպէս վերը տեսանք Աւան Բասենոյն ալ Աւնիկի հետ նոյն է. ուստի եւ երբ Խորենացի եւ Սեբէոս «Ուր Մուրց եւ Երասխ խառնին» բացատրութեամբ այդ բերդին տեղը կը մատնանշեն, աչքի առջեւ ունին ոչ թէ Քէօփրիւքէօյն, այլ Հասանկալէն. ինչպէս վերջերս Ժորէր իր ուղեւորութեան մէջ կը գրէր. «Անցնելով Արաքսը կամ Արազը Հասանկալէի մօտ» (Յակոբեան, Ուղեգրութիւններ, հատ. Զ, էջ 148)։ Եւ իսկապէս ալ Հասանկալէի հեռաւորութիւնն այնքան նուազ է այդ գետերու խառնուրդի վայրէն, որ առանց այլեւայլի կարելի է այդ բացատրութիւնը գործածել Բոլորապահակի կամ Բասենի Աւանի–Աւնիկի համար։ Միւս կողմէ անթիւ պատմական անցքեր ու իրադարձութիւններ որոնք Բասենի մէջ տեղի ունեցած են հին ժամանակներէ մինչեւ մեր օրերը, իրենց անմիջական առարկան ունեցած են Հասանկալէն։ Տարբեր չէր կարող ըլլալ մանաւանդ 5.—6. դարուն, երբ Բասեն կը կազմէր արեւմտեան սահմանը Պարսից տիրապետութեան ընդդէմ Հռոմայեցիներու եւ Բող–

բերդ—Հասանկալէն իր կարեւոր ռազմագիտական դիրքին պատճառաւ թշնամի յարձակումներու շատ յաճախ ենթակայ էր: Հաւանաբար Պարսից Վաղարշ թագաւորն իր շինարարութիւններու[50] ժամանակ մասնաւոր ուշադրութիւն դարձուցած ըլլայ Բողբերդի ամրոցին եւ անոր բաղանիքներու նկատմամբ: Եւ այս իրողութիւնը միանգամայն առիթ տուած ըլլայ Մովսէս Խորենացւոյ Վաղարշաւանի[51] աւանդութեան ծագման:

Ինչպէս որ թանձրամած խաւարի մէջ երբ լուսաշող ճառագայթ մը մուտ գործէ, տակաւ տակաւ առարկաներն իրենց իրական պատկերը կը ստանան, այսպէս ալ, կը կար—

---

[50] Համեմատել Nöldeke, Tabari: Geschichte der Araber und Perser, 1879, էջ 134. — Arthur Christensen, L'Iran sous les Sassanides, Copenhague 1936, էջ 291, ծն. 5.

[51] Մովսէս Խորենացիին հետեւելով բառական կերպով կը կրկնեն նոյն աւանդութիւնը Վաղարշաւանի վրայ յաջորդ հայ պատմագիրները. այսպէս օրինակ Ասողիկ, Վարդան, Սամուէլ եւն: Իսկ Լաստիվերացի գրէ. Դաստակերտն մեծ Վաղարշաւան. խօսելով Տուղրիլի արշաւանքներուն մասին, կ'ըսէ, եկեալ մինչեւ ի գաւառն Բասեան եւ մինչեւ ի դաստակերտն մեծ, որ կոչի Վաղարշաւան, քանդեալ ապականեցին զաւառս քսան եւ չորս սրով եւ հրով (Պատմ., էջ 54), եւ ապա կը շարունակէ: Եւ կամէին այնու ձեռնարկութեամբ գալ ի քաղաքն Կարնոյ, բայց որ ծովու եզսահման... արգել զնոսա յընթացից իւրեանց (անդ, էջ 55): Այս նախադասութիւնը կը յիշեցնէ նոյն պատմագրին Անիկի մասին գրածը (անդ, էջ 80). «Իջանէ (Տուղրիլ) յընդարձակ դաշտն Բասենոյ առ անուն ամրոցաւն որ կոչի Անիկ, ... եւ անցեալ առ նովաւ գայ ի գլուխն Բասենոյ, մերձ ի գեօղն՝ որ կոչի Դու: Եւ եկեալ անտի սակաւ արամբ յանդէտս ի վերայ գահին

ծենք, թէ մեր մանրակրկիտ քննութիւններու լոյսին շնորհիւ Բողբերդ–Անիկ ամրոցը թօթափելով իր վրայէն դարերու ստուերամած մշուշը՝ իր հարազատ կերպարանքով կանգնած կը կենայ մեր աչքին առջեւ Բասենի դաշտին մէջ:

Այն տեղ, ուր այսօր Ուզուն Հասանի անունը կը տիրապետէ, կար ուրեմն հայկական բնիկ եւ սիրելի անուն մը: Այդ ամրոցը մեր պատմութեան եւ մատենագրութեան մէջ կոչուած է՝ Ղազար Փարպեցիէն Բողբերդ, Սեբէոս Բագրեւանդայ եպիսկոպոսէն Բոլորապահակ[52], ժողովուրդէն աւելի հասկանալի սակայն համազօր յորջորջումով մը: Իսկ հինգերորդ դարուն նա կը ներկայա-

---

որ հայի ի Կարին, եւես դքաղաքն վառեալ ամենայն պատրաստութեամբ... դարձաւ անդրէն»: Ուրեմն Լաստիվերցիին համար այդ երկու անունները համազօր էին: Իսկ Շապուհ Բագրատունիի պատմութեան մէջ Վաղարշաւան կը նոյնանայ Բասենի հետ. «Եւ էառ (Սմբատ) զամրոցն զԵրնջակայ եւ զԱլաշկերտ եւ զՎաղարշաւան, որ է Բասէն» (Պատմ. Էջմիածին, 1921, էջ 65):

[52] Ըստ Ալիշանի Բոլորապահակ տակաւին կը յիշուի ԺԴ. դարուն. Փլորենտացի Խրատագիրն վաճառականութեան յամի իբր 1335, ի տեղագրութեան ճանապարհի կարաւանաց՝ յԱյասայ չահաստանէ Հայոց Կիլիկիոյ՝ մինչեւ ցԴաւրէժ Ատրպատականի յիշէ յետ Կարնոյ եւ Բաղանեաց (Հասանկլայ), զայս հանգոյց Սեբէոսէ յիշեալ Polorbecche կոչելով (Այրարատ, էջ 25): Դժբախտաբար մեզ հնարաւոր չեղաւ ձեռք ձգել այդ գրութիւնը, որով ի վիճակի չենք հաստատել թէ որքան ստուգութիւն ունի Ալիշանի մերձեցումը Բէօվրիւքէօյի համար: Ալիշան հաւանաբար ընկալեալ կարծիքին հետեւելով այդ մեկնութիւնը տուած է:

նայ իբրեւ պաշտօնական Աւանը Բասենի, Մովսէս Խորենացիէն այսպէս յորջորջուած․ տասներորդ դարուն Կոստանդին Ծիրանածինի մօտ ստացած է ռամկին սիրելի Աւնիկ կերպարանքը, եւ այս ժողովրդական յորջորջումն իբր յատուկ անուն կը մնայ տիրապետող մինչեւ ԺԶ․ դարու սկիզբը։ Այսպէս կը ներկայանայ, ինչպէս տեսանք, Լաստիվերտցիի մօտ․ այսպէս կը ճանչնան Շերեֆեդդին, Կլաւիխոյ եւ Թովմաս Մեծոփեցի են։ ԺԶ․ դարէն սկսեալ Աւնիկ հռչակաւոր անունն ալ մոռացութեան կ՚ենթարկուի եւ անոր փլատակներուն վրայ կը կանգնի նոր անուն մը օտար՝ Հասանկալէ։

# ՑԱՆԿ ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐՈՒ

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

(վերջին հատորները:)

ՃԿ. Սեֆուլայ Հ. Օ., *Նոր Կտակարանի գրքերու կարգը Հայոց քով*: 1949, էջք 96: գ. ֆր. 1·—

ՃԿԱ. Աբեղեան Ա., *Քերովբէ Պատկանեան Դորպատում*: 1949, էջք 54: գ. ֆր. 1·—

ՃԿԲ. Պօղոսեան Հ. Ե., *Կարապետ Արթին Փաշա Տատեան* (1816—1873): 1949, էջք 84: գ. ֆր. 1·50

ՃԿԳ. Ակինեան Հ. Ն., *Քննութիւն Ս. Սահակի վերագրուած կանոններու եւ Հայոց եկեղեցական տարին է. դարու սկիզբը*: 1951, էջք 192: գ. ֆր. 2·—

ՃԿԴ. Ակինեան Հ. Ն., *Սիմէոն Պղնձահանեցի եւ իր թարգմանութիւնները վրացերէնէ*: 1951, էջք 276: գ. ֆր. 1·50

ՃԿԵ. Տէր-Պօղոսեան Հ. Պ., *Տեղագրական հետազօտութիւններ Հայաստանի մէկ քանի քաղաքներու եւ բերդերու մասին*, 1951, էջք 134: գ. ֆր. 2·—

ՃԿԶ. Աճառեան Հ., *Եւրոպական փոխառեալ բառեր հայերէնի մէջ*: 1951, էջք Ը + 188: գ. ֆր. 4·—

ՃԿԷ. Ոսկեան Հ. Հ., *Բարձր Հայքի վանքերը*: 1951 *(ընդ մամլով)*:

ՃԿԸ. Ակինեան Հ. Ն., *Եղիշէ վարդապետ եւ իր Պատմութիւն Հայոց պատերազմին. քննական ուսումնասիրութիւն*: Հատ. Գ. *(ընդ մամլով)*:

